# ԱՅՍ ՀԱՄԱՐՈՒՄ
## №: 11 ● 1985



ԱՐԹՈՒՐ ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ

## Քայլ

Մենք առաջին քայլն ենք անում
Հուրախություն մեր մայրերի,
Այնուհետև ընկերանում
Մեր բախտի հետ ու քայլերի:

Այնպես հեշտ ենք քայլում հետո,
Ընտելանում մուտք ու ելքին,
Եթե հաշվենք՝ գուցե ոտով
Հասած լինենք արեգակին:

Բայց ի՞նչ արած, դժբախտաբար,
Պատահում է մեկ-մեկ կյանքում,
Որ մի՛ շիտակ քայլի համար
Ամբողջ կյանքը չի հերիքում:

## Հետքեր

Ես ու ծանոթ մի որսորդ
Անտառ էինք գնացել,
Ուր շաղի ու շողի մեջ
Մեր մանկությունն էր անցել:

Շրջում էինք անտառում՝
Մտքերի մեջ ցիրուցան...
Նա որսի հետք էր փնտրում,
Ես՝ հետքերն իմ մանկության:

## Երգչուհին

ԳՈՀԱՐ ԳԱՍՊԱՐՅԱՆԻՆ

Հեռու եմ քեզնից, բայց քո շունչը տաք
Ջերմացնում է միշտ ինձ հեռվից հեռու,
Ապրում, շնչում ես դու իմ հարկի տակ,
Իմ կարոտի մեջ, իմ երազներում:

**Երբ տխուր եմ ես, թախիծն իմ տանջող**
**Դու ես միշտ վանում դայլայլով երգիդ,**
**Օ՜, ոչ, երգ չէ դա, այլ ինձ տուն կանչող**
**Մի կտոր արև, մի կտոր երկինք:**

Ձով զեփյուռ է նա, աղբյուր է շոգին,
Հայրենի տուն է, հայրենի օջախ,
Որ կարոտով է լցնում իմ հոգին
Ու կոչում ապրել, սիրել ու տենչալ:



# Իմ հայ ժողովուրդ

Հաճախ ժայռից էլ պոկվում են քարեր,
Բայց ժայռը կրկին ամուր է տեղում:
Հաճախ անտառից կտրում են ծառեր,
Բայց անտառն էլի անտառ է մնում:

Քո անցած կյանքի դժվար ճամփեքում,
Իմ հայ ժողովուրդ, դու միշտ անվեհեր,
Անտառի նման հպարտ ու կանգուն
Եվ ժայռի նման ամուր ես եղել:

Նկարը՝ ՀՈՎՆԱՆ ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻ

ԿԱՐԵՆ ՍԻՄՈՆՅԱՆ



# ԴԵՌ ԱՆԲԱՐԲԱՌ ՄԻ ՄԱՆՈՒԿ...

**Ես՝ անբարբառ մի մանուկ,**
**Երկու ձեռքս պարզեցի**
**Եվ իմ անզոր թևերով**
**Ազատություն գրկեցի...**
**ՄԻՔ. ՆԱԼԲԱՆԴՅԱՆ**

## Արմատները

... 1770-ական թվականներին էր: Ղրիմից ելած հայ գաղթականների քարավանը Ռուսաստան հասավ խոր աշնանը և շարունակեց իր ճանապարհը դեպի Դնեպրյան հարթավայր, որտեղ կայսրուհի Եկատերինա Երկրորդի հովանավորությամբ հիմնադրվելու էր հայկական մի նոր գաղութ:

Շահելով թուրքերի դեմ մղվող պատերազմը, Ռուսաստանը ոչ միայն ընդարձակել էր իր հարավային սահմանները, այլև կարողացել էր Թուրքիայից անջատել ու անկախ հայտարարել Ղրիմի խանությունը:

Նոր նվաճումների հետ ծնվեցին նոր հոգսեր:

Կայսրուհին որոշեց նոր տարածությունները բնակեցնել Ղրիմի հայերով, որոնք պատերազմի տարիներին աջակից էին եղել իրենց քրիստոնյա բարեկամներին: Հայերի համակրանքն ու բարեկամությունը ռուսների նկատմամբ արտահայտվել էր ժամանակի փորձություններին դիմացած հոգևոր ու գործնական հարաբերություններով: Ուրեմն, հարավային սահմաններում պետք է բնակվեին իսկական, հավատարիմ բարեկամները:

Կայսրուհին հրահանգել էր, որ ռուսական սահմաններից ներս անցնելուն պես նրանց ապահովեն սննդամթերքով, տուն ու տեղ դնելու համար՝ արքունական նպաստով ու հողատարածությամբ:

Բայց միշտ էլ գաղթականների քարավաններին դարանակալում են բազմաթիվ մեծ ու փոքր դժվարություններ: Շուրջ տասներկու հազար գաղթողներին հատկացված վեց հազար սայլի փոխարեն պատրաստ էր ընդամենը երկու հազարը: Մյուս անակնկալը ցրտաշունչ քամիներն էին և աշնանային անձրևները: Հայերը, անծանոթ լինելով ռուսական կլիմային, ամառային թեթև հագուստներով էին դուրս եկել Ղրիմից... Բայց մարդիկ կարողանում էին տոկալ: Համենայն դեպս, նրանք գիտակցում էին, որ գաղթի ճամփաները երբեք էլ կանաչապատ չեն լինում:

Ուտելիք չկար, օթևան չունեին, ավազակներն էլ մի կողմից էին հարձակում գործում: Երեխաներն ու ծերերը չէին դիմանում ցրտին ու քաղցին: Եվ քարավանի հետևից ձգվում էին թարմ գերեզմանաթմբերը, որոնց ծայրն ու վախճանը չէր երևում:

Գաղթականներն իրենց հուսահատ ա-

դերսագրերով, բողոքներով ու գանգատներով դիմում էին տեղի իշխանություններին, բայց տեղական իշխանությունները ոչ միայն մտադիր չէին ընդառաջել գաղթողներին, այլև ամեն կերպ խոչընդոտում, թույլ չէին տալիս, որ նրանք իրենց ձայնը հասցնեն մայրաքաղաք:

Ի՞նչ արած... Հայերը մի խումբ ընտրեցին, որը պետք է առաջ անցներ նոսրացող քարավանից և հարմար մի բնակավայր գտներ: Այդ խումբը հասավ մինչև Տագանրոգ քաղաքը և ապա՝ գնալով դեպի արևելք, Դոնի աջ ափով բարձրացավ հոսանքն ի վեր և դադար առավ Սուրբ Դմիտրի Ռոստովսկու ամրոցի մոտ:

Հետախույզ խմբից այս լուրն առնելով, գաղթականները մի պատվիրակություն ընտրեցին և ուղարկեցին մայրաքաղաք, որպեսզի վերջապես հնարավոր լինի ըստանալ կայսրուհու հրովարտակը:

Այդ հրովարտակով հայերի թափառումներն ու տառապանքները մոտենալու էին վախճանին: Կայսրուհին գաղթականներին հատկացրեց Սուրբ Դմիտրի Ռոստովսկու ամրոցի համար մյուս բնակավայրերից առանձնացված հողաբաժինը՝ մինչև Թեմերնիկ գետը:

Հրովարտակը հայերին տալիս էր լիակատար ինքնավարություն: Նախիջևան քաղաքը հիմնելուց և բնակեցնելուց հետո կայսրուհին հրամայում է ստեղծել Մագիստրատ, այսինքն՝ քաղաքապետարան, և Հայկական շրջանում դատ ու վճիռ կատարել հայկական օրենքների ու սովորությունների համաձայն և ազգաբնակչության կողմից ընտրված մեծավորների տնօրինությամբ:

Կայսրուհին խրախուսում էր իր նոր հպատակներին, եթե նրանք նախաձեռնություն էին ցուցաբերում անհրաժեշտ և օգտակար գործարաններ ու արհեստանոցներ հիմնելու գործում, թույլատրում էր պտղատու այգիներ տնկել, որոնց բերքից քաշած ամեն տեսակի գինին կարելի էր վաճառել ինչպես հայկական բնակավայրերում, այնպես էլ Ռուսաստանի այլևայլ քաղաքներում:

... Քաղաքի ու շրջակա գյուղերի շինարարությունը գլխավորում էր Հովսեփ արքեպիսկոպոս Երկայնաբազուկ Արղությանը: Նրա ջանքերով ապագա քաղաքի հատակագիծը պատվիրվել ու հաստատվել էր Պետերբուրգում:

Գաղթականները՝ լքած լինելով իրենց տունն ու տեղը, իրենց ունեցվածքը, ճանապարհին էլ մեծ կորուստներ կրելով հանդերձ, աչքի լույսի պես պահպանել ու իրենց հետ բերել էին հինավուրց ձեռագիր մատյանները, վանքերի սպասքները, նկարիչների ստեղծած կտավները, նույնիսկ՝ խաչքարերն ու եկեղեցիների փայտաքանդակ, հինավուրց դռները:

Գաղթի ճամփի տառապանքներն ու ողբերգությունները, չնչին բացառություններով, գրեթե հավասարեցրել էին բոլորին: Եվ պետք է անցնեին տարիներ, որպեսզի նորակառույց քաղաքի հասարակության մեջ դարձյալ առաջվա պես ընդգծվեին ու առանձնանային նախկին շերտավորումներն ու սկսվեին դասակարգային անողոք հակամարտությունները:

Այո, նրանք եկել, հաստատվել էին այս վայրերում շատ մեծ կորուստներ ունենալով, բայց հոգու խորքում պահպանելով յուրաքանչյուր հայի հավիտենական ուղեկիցը՝ կարոտը, որը կապում, հարազատեցնում էր բոլորին: Այո, նրանք դեռ պետք է ընտելանային տափաստանային չոր տապին, պետք է վարժվեին իրենց մոտակա ու հեռավոր հարևաններին և, իհարկե, համատեղ ջանքերով, արյուն-քրտինքով պետք է շենացնեին այս ամայի տարածությունները:

Այս ամենը նրանք անպայման գլուխ կբերեին: Բայց պետք էր նաև պաշտոնապես հիմնադրել քաղաքը, որը կոչվելու էր պատմական Հայաստանի նույնքան պատմական Նախիջևան քաղաքի անունով, որը գտնվում էր հեռու-հեռավոր մայր Արաքսի ափին... Այս նպատակով գլխավոր հրապարակում 1781 թվականին հապճեպորեն մի փայտաշեն եկեղեցի կառուցեցին, և հենց այդ փոքրիկ, անշուք շինության մեջ էլ ապրիլի 21-ին Հովսեփ արքեպիսկոպոս Երկայնաբազուկ Արղությանը կատարեց Դոնի Նախիջևանի հիմնադրման հանդիսավոր ծիսակատարությունը: Քաղաքի չորս անկյունաքարերը հանդիսավոր թափորի ուղեկցությամբ դրվեցին չորս ծայրամասերում:

... Հզոր արմատներ էին միրճվում այս նոր գաղութում: Եվ հենց սկզբից էլ հայտնի էր, որ նույնիսկ մի հերթական տեղահանությունից հետո ժողովուրդը մտադիր չէր չորացնել իր կենսական ակունքները:

(շարունակելի)

# Ես շատ, շատ եմ սիրում նրան

Տատիկ ունեմ, սարվոր տատիկ,
Որ ապրում է Իջևանում.
Ուներ երեք խիզախ տղա
Եվ երեք ժիր թոռ աշխարհում:

Պայթեց դաժան պատերազմը,
Եվ վեցին էլ ճակատ տարան,
Շատ սպասեց իմ խեղճ տատը,
Բայց ոչ մեկը ետ չդարձավ:

Երկար պահեց նրանց ճամփան,
Աչքերի լույսը խավարեց,
Իսկ տղերքը տուն չդարձան,
Ինքը մաշվեց, կյանքը հալվեց:

Ես շա՜տ, շա՜տ եմ սիրում նրան
Եվ խոսքերը իր շատ ասված,
Արցունքը իր՝ անխոս վկան՝
Պատերազմի՝ դառն ու դաժան:

Իր խավարած աչքն եմ սիրում
Եվ արցունքներն իր մոլորված,
Եվ հուշերը աղոտացած՝
Իր մտքերում արդեն շաղված:

ՌՈՒԶԱՆՆԱ ԵՎԻՆՅԱՆ
Երևան, Ա. Մռավյանի անվան
№ 25 դպրոց, 6-րդ դաս.



# Ջավախք

Իմ մանկության օրրանն ես դու՝
Օրորներով մայրական,
Պատսպարան վրան ես դու.
Որքան եմ քեզ պարտական:

Ես կձուլվեմ քո հողի հետ,
Կհալվեմ, ջուր կդառնամ,
Այգաբացի շողերից մեջ
Հուրհրան ցող կդառնամ:

ՍՊԱՐՏԱԿ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ
Վրաց. ՍՍՀ, Ախալքալաքի շրջ.,
Լոմատուրցխի 8-ամյա դպրոց,
7-րդ դասարան



ԿԱՐԻՆԵ ԲԱՅՐԱՄՅԱՆ, 2-րդ դաս.
ԻՐԻՆԱ ԹԱՄՐԱԶՅԱՆ, 5-րդ դաս.

ՔԱԼԱՇՅԱՆ ԱՐՄԵՆ, «ՄԵՐ ՏՈՒՆԸ»
Լենինական



Իջևանի գեղարվեստի դպրոցի սաների աշխատանքներից





ՌՈՒԶԱՆՆԱ ՍԱՐՈՒԽԱՆՅԱՆ, 6-րդ դաս

ՄԱՐԶՊԵՏ ԱԼԻԽԱՆՅԱՆ, 4-րդ դաս., «ԳՈԳՆՈՑ»
ՆԱՐԻՆԵ ԲԵԿՆԱԶԱՐՅԱՆ, 4-րդ դաս. «ԲՈՆԻՉ»
ԼՈՒՍԻՆԵ ԽԱՉԱՏՐՅԱՆ, 5-րդ դաս. «ԳՈՐԳ»





ԱԶԱՏ ԵՂԻԱԶԱՐՅԱՆ

## Դեղձենու տունկի կարոտը

Օտարության մեջ մեռնող հայ թագավորի անհույս տենչանքը, թե՝ «Ո՞ տայր ինձ զծուխն ծխանի», հայրենակարոտության երևի առաջին երգն էր մեր բանաստեղծության մեջ: Դա սկիզբն էր: Միջնադարում, երբ Հայաստանը կորցրեց անկախությունը և անպաշտպան էր ու անապահով, դռները բաց բոլոր ասպատակությունների առաջ՝ հայերը ստիպված էին զանգվածաբար հեռանալ հայրենի երկրից, ապահովություն փնտրել օտար ափերում, օտար երկնքի տակ: Պանդխտությունը դարձավ հայոց կյանքի բնորոշ կողմերից մեկը: Եվ ազգային բանաստեղծության մեջ ստեղծվեց մի երակ, որ կոչվեց պանդխտության երգեր: Այնքան սիրված, դարերով մեզ ուղեկցած «Կռունկը» ստեղծվել է այդ շրջանում: «Կռունկ, ուստի՞ կուգաս, ծառայ եմ ձայնիդ, Կռունկ, մեր աշխարհեն խապրիկ մը չունի՞ս»,— թախիծով ու կարոտով հարցնում է հայ պանդուխտը հեռվից եկող թռչունին: Եվ դեռ քանի՜-քանի դարեր պետք է հնչեր այդ հարցը աշխարհի տարբեր ծագերում սփռված հայերի հոգում...

**Ես շեֆթալու մորճ մ' էի,**
**Ապառաժ քարը բուսնէի:**
**Եկին, քաղեցին, տարին,**
**Զիս այլոց այգին տնկեցին:**
**Ծէքերն ալ շերպեթ արին**
**Ու բերին ինձի ջրեցին:**
**Եղբարք, եկեք զիս տեղս տարեք**
**Ու ձնան ջրով ջրեցեք:**

(Ես դեղձենու տունկ էի ու աճել էի ապառաժ

քարի վրա։ Եկան, պոկեցին, տարան, Տընկեցին ուրիշների այգում։ Շաքարից էլ օշարակ պատրաստեցին և բերին ինձ ջրեցին։ Եղբայրներ, ինձ տեղս տարեք Եվ ձյան ջրով ջրեք)։ Այս փոքրիկ բանաստեղծությունը հոգու խորքերից եկող ծով վշտի ու կարոտի խտացում է։ Ինձ թվում է, այն կարդացողը տեսնում է օտար երկրներն ընկած մարդու խոր-խոր թախիծով լեցուն աչքերը։

Այս երգը հայրենակարոտության ամենամաքուր արտահայտություններից մեկն է։ Պանդուխտը չի բողոքում աղքատությունից։ Ընդհակառակը, հիմա նա գուցե նույնիսկ ավելի լավ պայմաններում է. ապառաժ քարն՝ ուր, այգին՝ ուր։ Եվ նրան լավ են խնամում. «շաքարից օշարակ պատրաստեցին և բերին ինձ ջրեցին», սա ժողովրդական խոսքում տարածված փոխաբերություն է, որ ցույց է տալիս, թե ինչքան խնամքոտ վերաբերմունք է եղել «ուրիշի այգում»։ Բայց ինչքան է կարոտել պանդուխտի հոգին, որ խնդրում է՝ եկեք, ինձ իմ տեղը տարեք և ձյան ջրով ջրեք։ Նրա համար ոչ մի բան արժեք չունի՝ ոչ այգին, ոչ «օշարակը»։ Նա իր «ապառաժ քարն» է ուզում, իր ծննդավայրը։

Այս բանաստեղծությունը սկզբից մինչև վերջ փոխաբերություն է, բայց ոչ թե հատուկ հնարված, այլ՝ դարեր ի վեր ժողովրդական խոսքում ապրող։ Հայ պանդուխտը միջնադարյան բանաստեղծության մեջ իրեն համեմատում է այնքան սիրված դեղձենու տունկի հետ։ Մնացած բոլոր փոխաբերությունները՝ հայրենիք-ապառաժ քար, օտարություն-այգի, բարեկեցիկ կյանք—օշարակով ջրել և այլն, այդ մեծ փոխաբերության մանրամասներն են։ Այս բոլորը ժողովրդական-խոսակցական լեզվից էին առնված։ Նկատենք, որ այսքան խոր զգացմունքային բանաստեղծությունը չունի ոչ մի զգացմունք արտահայտող բառ ու բացականչություն, ոչ մի մակդիր։ Ժողովրդական բանաստեղծության պարզությունը այս երգում արտահայտվել է կատարյալ ձևով։ Եվ հենց այդ պարզությունն էլ այսպիսի ուժ է տալիս բանաստեղծությանը։

Անցած հարյուրամյակների ընթացքում հայ բանաստեղծությունը հարստացավ նորանոր պանդխտության երգերով։ 1915 թվականի մեծ եղեռնից հետո ծնված պանդխտության երգերից ամենատարածվածներից... ամենասրտակեղեքը «Քելե, լաո, քելե երթանք մըր էրգիր» ամենուր տարածված ու սիրված երգն է։

Այսպես, հայրենիքի կարոտը՝ հայ ժողովրդի պատմական դժվար բախտի բերումով, դարերի ընթացքում եղավ հայ բանաստեղծության գլխավոր մոտիվներից մեկը։

ԵՐՎԱՆԴ ՊԵՏՐՈՍՅԱՆ

# Բառերի լույսը

Մայր եմ ասում,
Հայր եմ ասում,
Ասում՝ եղբայր,
Ասում՝ քույր,
Եվ բառերից
Լույս եմ առնում,
Հույս եմ առնում,
Համ ու բույր։

Հաց եմ ասում,
Ջուր եմ ասում,
Ասում եմ՝ հող,
Հայրենիք,
Բյուր անգամ
Էլ չեմ սարսում,
Գլխիս ունեմ
Ես տանիք։

Պատմություն եմ
Երբ ես ասում
Ու ասում եմ՝
Մայր լեզու,
Որտեղից եմ
Գալիս, գիտեմ,
Դեպի ուր եմ
Ես գնում։

Երբ ասում եմ՝
Խաղաղություն
Ու երբ սեր եմ
Շշնջում,
Արևով է
Լցվում շուրջս,
Կյանքն է իմ մեջ
Ղողանջում։

ՌԵՎԱԶ ԻՆԱՆԻՇՎԻԼԻ




Խանութում երեք բաժին կար: Աշխատում էին երեք վաճառողներ՝ երկու կին՝ Մարոն ու Մարգալիտան, և մի տղամարդ՝ Գերոնտին:

Ներս մտավ մի փոքրիկ աղջիկ. կլիներ տասը-տասնմեկ տարեկան: Մոտեցավ Գերոնտու բաժնին և մի տարեց կնոջից հարցրեց՝ վերջինը դու՞ք եք: «Ես եմ, բալա»: Աղջնակը լուռ կանգնեց նրա ետևում:

Տարեց կինը կշռել տվեց կես կիլո «Սիրողական» երշիկ, երկու հարյուր գրամ «Ռուսաստանյան» պանիր և խնդրեց քառասուներկու կոպեկանոց մեկ տուփ մանանեխ:

Գերոնտին համրիչի վրա շտապ-շտապ ետ ու առաջ տվեց հատիկները և ասաց՝ երկուս ու ութանասուն: Տարեց կինը երեք ռուբլիանոցը մեկնեց նրան:

— Երկու ռուբլի վաթսունմեկ կոպեկ, — բարձրաձայն ուղղեց փոքրիկ աղջիկը:

— Ո՞նց թե, — վաճառողը հակվեց առաջ:

— Երկու ռուբլի վաթսունմեկ կոպեկ, — անվարան կրկնեց աղջիկը:

— Գիտե՞ս ինչ, այ աղջի,— բարկացավ Գերոնտին:

— Գիտեմ:

— Ի՞նչ գիտես, ի՞նչ:

— Այն, որ երկու ռուբլի վաթսունմեկ կոպեկ է, ոչ թե՝ ութսուն:

Կաս-կարմիր կտրած վաճառողը համրիչի կոճակները խառնեց ու նորից սկսեց: Ստացվեց երկու ռուբլի վաթսունմեկ կոպեկ:

— Արագ, մի քիչ արագ, — հերթի վերջից բացականչեց պկնոցավոր մի մարդ:

Գերոնտին մանրը վերադարձրեց տարեց կնոջը և հայացքը հառեց աղջկան:

— Ասա, տեսնեմ՝ ի՞նչ ես ուզում:

— Մի բարկացեք, — ասաց աղջիկը:

Գերոնտին ուղղվեց ու նայեց նրան. նիհար, բաց երկնագույն աչքերով և փոքր-ի[illegible] վերից քթով աղջնակ էր: Ձախ ձեռքում ցանցապարկն էր, աջում՝ հինգ ռուբլիանոցը: Կանգնել էր շատ հանգիստ:

— Ասա, տեսնեմ՝ ի՞նչ եմ տալու,— հաշտ տոնով հարցրեց վաճառողը:

— Տվեք, խնդրեմ, երկու հարյուր հիսուն գրամ երշիկ, երկու հարյուր գրամ «Շվեյցարական» պանիր, վեց հարյուր էլ կարագ:

Գերոնտին ահագին չարչարվելուց հետո միայն կարողացավ ճիշտ կշռել երկու հարյուր հիսուն գրամ երշիկ, երկու հարյուր գրամ պանիր: Կարագը կշռելու հարկ չկար, որովհետև փաթեթով էր՝ երկու հարյուր գրամանոց. երեք տուփ տվեց աղջկան: Հետո համրիչը վերցրեց, սկսեց դանդաղ և զգուշորեն շարժել կոճակները: Ի վերջո, անհամարձակ արտաբերեց.

— Երեք ու յոթանասուն:

— Երեք ռուբլի վաթսունյոթ կոպեկ:

— Վա՜, էս ո՞վ է եղել, տո՜, — բացականչեց Գերոնտին: Մտադրվեց վերստին հաշվել, բայց ձեռքը թափ տվեց ու թե՝ տուր, այ բալա, ինչ ուզում ես, տուր ու գնա, պարապ չեմ ես:

— Ստացեք՝ երեք ռուբլի վաթսունյոթ կոպեկ:

Վաճառողը մանրը վերադարձրեց: Աղջիկը գնաց: Բոլորը նայեցին նրա ետևից: Փոքրիկ էր ու նիհար, բայց այնպես զգաստ էր քայլում. մեջքը՝ ուղիղ, գլուխը՝ բարձր: Հարթ, խարտյաշ մազերը «ձիու պոչի» նման հանգուցել էր ետևը:

— Բա սրա մե՞րն ինչ քոքվածը կլինի, տե՞ր աստված... Թշնամուս չհանդիպի, — ծոր տվեց կոմոդի նման լայն մի կին:

— Հրաշալի աղջիկ է, — շշնջաց ինչ-որ մեկը:

— Ի՞նչ:

Ոչ ոք ձայն չհանեց:

— Ես թոռ ունեմ՝ սրանից տարիքով, բայց մեծերի մոտ խոնարհ հարս է, — կողքը կանգնածին բացատրում էր ասես ծառը բերնից ուսերը ճկված, սպիտակահեր մի կին:

— Իմ աղջիկն էլ է էպիխին:

— Էդ ամենը դաստիարակությունից է:

Գերոնտու զայրույթը դեռ չէր անցել: Ձեռքերը դողում էին:

— Են վախտը լավը կլինի, որ ոչ մի բան չտայի: Չեմ հասկանում, թե ինչի են էս տեսակին խանութ ուղարկում: Մեր չունե՞ն, հեր չունե՞ն:

— Ժամանակ չունեն:

Բան ասեցիր, էլի՝ ժամանակ չունեն:

— Գործը, ընկերներ, գործը մի մոռա[illegible] բամբ ձայնով հիշեցրեց մեկը:

*

[illegible] հենց այդ օրվանից էլ սկսվեց...

Աղջկա երևալուն պես վաճառողուհիները՝ Մարոն, Մարգալիտան, ծիծաղելով դիմում էին Գերոնտուն.

— Գալիս է, Գերոնտի, գալիս է:

Գերոնտին կոտր չէր ընկնում.

— Գալիս է՝ թող գա:

— Քեզ պիՆդ պահի:

— Դրա՞ նմաններին եմ տեսել ու ճամփու դրել, — արժանապատվորեն պատասխանում էր նա, բայց, այդուհանդերձ, զգացվում էր, որ շատ է հուզվում:

Պլաստմասսայից կարմիր ցանցապարկը աղջիկը միշտ կախում էր ձախ ձեռքից: Ծրջազգեստը կիսով չափ ծածկում էր սրունքները: Նա ոչ թե քայլում էր, այլ, ասես՝ սահում: Ուսերը բոլորովին չէին շարժվում: Խանութ մտնելուն պես թվում էր, թե ճառագայթում էին նրա աչքերը: Վաճառող կանայք անհամբեր սպասում էին. նրանք այրվում էին հետաքրքրասիրությունից. ի՞նչ է լինելու, ի՞նչ է կատարվելու: Աղջիկը մոտենում էր Գերոնտուն և հանգիստ ասում.

— Տվեք, խնդրեմ... երեք հարյուր վաթսուն գրամ երշիկ:

— Էլի սկսեց...,— թևաթափ բացականչում էր Գերոնտին:

Մարոն ու Մարգալիտան ծիծաղից թուլանում էին:

— Ձեր կշեռքը տասը գրամ պակաս է կշռում: Երեք հարյուր վաթսուն գրամ երշիկ, երկու հարյուր հիսուն գրամ պանիր:

— Հերիք է, այ աղջի, հերիք է: Կամ երկու հարյուր ասա, կամ՝ երեք հարյուր: Սադի՞ստ ես դու, թե՝ ինչ ես:

— Սադիստը ի՞նչ է:

— Տանջող, բռնակալ: — Գերոնտին բարձրացրեց ձայնը:

— Շնորհակալություն, ես կհիշեմ այդ բառը:

Մարոն ու Մարգալիտան թաշկինակները էին փնտրում, որ մաքրեն իրենց արցունքները: Միշտ կշռելու համար Գերոնտին կաշվից դուրս էր գալիս, բայց այլևս չէր հաշվում: Աղջիկն էր նրան հուշում, թե ինչի համար ինչքան պետք է վճարել: Գերոնտին խարխափողի նման վերցնում էր թղթադրամը, դողացող ձեռքով մանրը վերադարձնում, իսկ երբ փոքրիկ հաճախորդը դուրս էր գնում, ուժահատ փլվում էր աթոռին:

— Վայ, այ մարդ, ոմանք ինչ հանգած աստղի տակ են ծնվում, — հառաչեց Գերոնտին և խալաթի փեշով մաքրեց ճակատին պաղած քրտինքի կաթիլները:

— Գերոնտի, դու լավ կանես՝ տեղափոխվես, թե չէ՝ ինչ-որ բան կպատահի քեզ հետ, — խորհուրդ էին տալիս վաճառող կանայք:

— Կպատահի, ո՞նց չի պատահի: Դրանից հետո հաշիվ անել չի լինում: Ինձ միշտ թվում է, թե ամեն ինչ խառնում եմ: Իսկ էս մեկ մատ քորփեն իսկի աչքն էլ չի ճպում: Աչքերում էլ ինչ-որ կախարդական վհուկ կա:

Անցնում էր մի քանի օր, և Գերոնտին խաղաղվում էր: Հայտնվում էր աղջիկը, ինչպես միշտ՝ հպարտ և զգաստ, Գերոնտին մարտական տեսք էր ընդունում, իսկ Մարոն ու Մարգալիտան պատրաստվում էին հետաքրքրաշարժ տեսարան դիտելու: Աղջիկն սկսում էր՝ երեք հարյուր յոթանասուն գրամ սրանից, երկու հարյուր ութսուն՝ դրանից, հարյուր երեսուն...

Գերոնտին ոտից գլուխ ջուր էր դառնում:

— Արի, արի ամեն ինչ ձրի տար, պրծնեմ, էլի:

— Ինչո՞ւ՝ ձրի:

— Մեր չունե՞ս, թող քո փոխարեն նա գա:

— Մայրս գործ շատ ունի:

— Դե որ էդպես է, կիմանամ, թե որ դըպրոցում ես սովորում, ու իմ ոտով կգամ դիրեկտորիդ մոտ:

— Ինչպես կուզեք:

Բայց դպրոց գնալու կարիք չզգացվեց: Աղջիկը գնաց ու գնաց: Երկու ամիս չերևաց: Մարոն ու Մարգալիտան շնորհավորում էին իրենց գործընկերոջը.

— Փրկվեցիր, Գերոնտի, փրկվեցիր:

Գերոնտին ոչինչ չէր պատասխանում, բայց լավ զգացվում էր, որ հոգին խաղաղվել է: Դեմքն էլ խաղաղվեց: Մաքուր սափրվում էր, կոկիկ հագնվում, նույնիսկ սկսեց փողկապ կապել: Ճերմակ մազերը գեղեցիկ սանրում էր, հաճախորդների հետ էլ ավելի բարեկիրթ էր վարվում:

Մարոն ու Մարգալիտան փորձելու նպատակով մեկ-երկու անգամ ասացին, թե՝ գալիս է, գալիս: Գերոնտին կարմրում էր, բայց երբ տեսնում էր՝ ստում են, ձգվում էր ու շարունակում՝ հետո՞ ինչ, թող գա:

*

Ամառային տաք օրերին հաջորդեցին աշնանամուտի ցուրտ օրերը: Հանախակի փըչում էր քամին: Փողոցները ծածկվեցին կարմրադեղնավուն տերևներով: Հավաքարարները հայհոյում էին քամուն: Մի առավոտ, երբ քամին հանդարտվեց, սկսեց ձյուն տեղալ: Ճերմակ փաթիլները պարելով իջնում էին ցած, բայց գետնին դիպչելով՝ իսկույն հալվում էին: Ահա այդպես ձյունում էր, երբ հայտնվեց աղջիկը: Տաք, երկար վերարկու էր հագել, տաք, սանդղագործ գլխարկը բաշել էր մինչև թարթիչները, տաք, երկարաճիտ կոշիկներով քայլում էր վստահ ու հանգիստ, ուսերը բոլորովին չէր շարժում: Աղջկան

տեսնելուն պես Գերոնտին կարմրեց, բայց իսկույն էլ ժպտաց: Մարոն ու Մարգալիտան բացականչեցին.

— Թանկագին հյուրը բարեհաճում է:

Աղջիկը դալուկ ժպիտով նայեց կանանց ու մոտեցավ Գերոնտուն: Գերոնտին ինչ-որ բան էր կշռում, բայց ոչ թե կշեռքին, այլ աղջկան էր նայում ու ժպտում:

— Ինչպե՞ս եք, — մեծավարի հարցրեց աղջիկը:

Աղջիկն էլ էր ժպտում՝ զարմանալիորեն գեղեցիկ ժպիտով. զարմանալիորեն գեղեցիկ ատամներ ուներ, զարմանալիորեն գեղեցիկ, բարի աչքեր, իսկ ամբողջ դեմքին ինչ-որ պայծառաշող բան կար:

— Դուք հո լա՞վ եք: Ես հիվանդ էի. քութեշ ունեի: Հիմա՝ ոչինչ, անցել է:

— Վա՜խ,— բացականչեց Գերոնտին,— ես էլ զարմանում էի:

— Ինչու՞ էիք զարմանում:

— Ուշ էիք գալիս:

— Թե՞ որ չէի տանջում ձեզ:

— Չէ, ինչ տանջել, ինչ բան: Մենակ թե՝ դու լավ լինես, ինչ տանջանք, ինչ բան:

— Սրանից հետո ձեզ հետ միշտ լավ եմ վարվելու:

— Սրանից առաջ էլ դու վատ չես վարվել ինձ հետ:

Աղջիկը ծիծաղեց:

Մարոն ու Մարգալիտան սառած-պելած նայում էին:

— Այսօր տվեք երկու հարյուր գրամ «Շվեյցարական» պանիր և երկու հարյուր գրամ երշիկ:

— Սերվիլադ ուզու՞մ ես: Ունեմ: — Գերոնտին վաճառասեղանի տակից հանում է սերվիլադն ու ժպտում, — երկու հարյուր վաթսուն գրամ չե՞ս ուզում կամ հարյուր իննսունչորս:

— Ոչ, այլևս պետք չէ, — ժպտալով պատասխանեց աղջիկը:

— Վա՜, քիչ ես ուտում՝ դրա համար էլ էդքան լղար ես:

— Չի կարելի, որ ես չաղանամ, առանց այդ էլ...— աղջիկը փքեց թշերը:

— Ախր, ինչու՞:

— Բալետի պարուհի եմ դառնալու:

— Վա՜, օպերայու՞մ:

— Եթե կարենամ, նաև՝ օպերայում:

— Դու կկարենաս, դու ամեն ինչ կարող ես,— Գերոնտին ուղղեց մեջքը,— եթե որևէ բանի կարիք ունենաս, կգաս ինձ մոտ, ես էստեղ եմ:

— Շնորհակալություն: Շատ շնորհակալ եմ, — աղջիկը վարից նայում էր վեր ու ժպտում:— Այ, հիմա շատ լավն եք: Այլևս ոչ մեկին չնեղացնեք, հատկապես՝ կանանց:

— Ես՞: Նեղացնե՞լ...

Աղջիկը կոկիկ փաթաթած պանիրն ու երշիկը դասավորեց պայուսակում, ձեռքը պարզեց վեր և ժպտալով գնաց դեպի ելքը: Դեռ չէր բացել դուռը, երբ Գերոնտին կանչեց.

— Անունդ ի՞նչ է, անունդ:

— Միրանդուխտ:

— Ասել է, թե՝ Միրա՞:

— Ոչ:

— Ուրեմն՝ Միրանդա:

— Ոչ, Միրանդուխտ:

— Վա՜:

Աղջիկը վերստին բարձրացրեց ձեռքը և մատները բաց ու խուփ անելով դուրս գնաց: Մարոն ու Մարգալիտան քիթները կախ կանգնել-մնացել էին: Ընդմիջմանը, երբ երեքով նստոտեցին ցածրիկ սեղանի շուրջը, Գերոնտին ասաց.

— Ինչ է մարդ ասածդ: Էս աղջիկը հո ինձ ջղայնացնում էր: Ջղայնացնում էր, չէ՞, բայց հետո էլ սթափեցնում էր: Երբ սա հայտնվեց, ես նոր միայն պարզ զգացի իմ աղջիկների պակասությունները: Հիմա հոգիները հանում եմ, որ կարգին քայլել ու իրենց պահել սովորեն: Իսկ ես... Իսկ ես նստում ու հա՛ հաշիվներ եմ անում:

— Հաճճարեղ աղջիկ է, — միաբերան ասացին Մարոն ու Մարգալիտան և հացի կտորները միասին թաթախեցին յուղոտ թավայի մեջ:

— Իսկական հանճար. ի՜նչ հաշիվներ է անում. տեսնում եք, էլի՝ մեքենայի նման՝ տա-տա-տա-տա-տա և՝ ճիշտ:

Այդ օրվանից Միրանդուխտն ու Գերոնտին մեծ բարեկամներ են: Գերոնտին մեկ-մեկ ինչ-որ բաներ է պահում իր փոքրիկ բարեկամի համար, բայց դա աղջկան բոլորովին դուր չի գալիս. նա միշտ վերցնում է այն, ինչը դրված կամ ցուցադրված է վաճառասեղանին: Հա, մի բան էլ. Գերոնտին ուզում է Միրանդուխտին հրավիրել իր աղջիկների մոտ՝ Նախալովկա, բայց չի համարձակվում: Բանն այն է, որ Գերոնտու փայտե երեք ոտնանի բարձրության տնակը կառուցված է փոքրիկ այգում: Մինչդեռ Միրանդուխտը (այդպես է պատկերացնում Գերոնտին) մարմարե փայլփլուն աստիճաններով վեր ու վար է անում և իր փոքրիկ ու գեղեցիկ ձեռքով քնքշորեն ողջույններ հղում բոլոր հանդիպողներին: Հը, ո՞նց է այսպիսի աղջկան Նախալովկայում հյուրընկալելը: Օ՜...

Վրացերենից թարգմանեց
ՀՐԱՉՅԱ ԲԱՅՐԱՄՅԱՆԸ



ԳԱՌՆԻԿ ՄԿՐՏՉՅԱՆ

# Սովորեցնում եմ, նաև՝ սովորում

Նկարը՝ ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ



## 12. ՉԱՓԻ ԶԳԱՑՈՒՄԸ

Հրանտը ակտիվ, անհանգիստ բնավորություն ունի: Նույնիսկ նրա նմանները շատ շուտ են աչքի ընկնում (և՛ լավ, և՛ վատ կողմերով): Նրա նմանները նաև հաճախ անտեղի պատժվում են, դառնում քավության նոխազ:

Դասից փախե՞լ են՝ «Հրա՛նտ, դու՝ կազմակերպած կլինես», զուգարանում ծխախոտի մնացու՞կ է հայտնաբերվել՝ «Հրա՛նտ, սկսել ես ծխե՞լ: Ո՞չ: Ազնիվ խո՞սք: Եթե դու չես, կգիտենաս, թե ով է»: Միջանցքում դրված ծաղիկներից մեկը կոտրվե՞լ է՝ «Դե հերի՛ք եղավ, վաղը ծնողիդ հետ կներկայանաս»...

Եվ այսպես՝ շարունակ: Սկզբում նա երևում է վախվորած: Եթե նույնիսկ չես էլ մեղադրում՝ արդարանալու, բացատրելու ցանկություն է ունենում: Եթե անգամ նայում ես հանգիստ, սովորական հայացքով՝ աչքերիդ մեջ կարդում է սպառնալիք, մեղադրանք: Այդպես շարունակվում է մի որոշ շրջան: Հետո գալիս է անխուսափելին՝ ուսուցիչների ու նրա միջև առաջանում է անջրպետ, որը հետզհետե վերածվում է փոխադարձ անվստահության ու հակակրանքի: Եվ նա ձգտում է... վրեժխնդիր լինել (բառը պատահական չէ, այդպե՛ս է):

...Նկատել էի, որ Հրանտը չափազանց հետևողականությամբ բացակայում է մաթեմատիկայի ու երգի դասերից, անընդհատ վեճի է բռնվում հավասարակիցներից մեկի հետ: Զրուցեցինք առանձին, մտերմիկ տոնով.

— Ի՞նչ է պատահել. միգուցե դասե՞րն ես, միգուցե կարողանա՞մ օգնել, միգուցե իրա՞ր հետ կարողանանք մի ընդհանուր եզրակացության գալ:

Ոչ մի պատասխան: Հետո խոսեցինք ուսուցչանոցում.

— Դասերից չբացակայե՛ս, սովորե՛ս, լռությունդ արհամարհանքի նշա՞ն է, ի՞նչ է:

Հետո ծնողն էր մենախոսում.

— Ա՛յ տղա, խոսիր, ի՞նչ ես պապանձվել: Տղա չեղավ ինձ համար, այլ՝ կրակ ու պատիժ դլխիս...

Ոչինչ չէր օգնում: Հրանտը լուռ էր ու անկոտրում: Կանոնավոր հաճախում էր ռուսաց լեզվի, պատմության, մյուս

դասերին, վատ չէր նաև առաջադիմությունը: Աշխատանքի ուսուցման դասին միայտից պատրաստեց մի գեղեցիկ տիեզերանավ, դպրոցական ցուցահանդեսում արժանացավ խրախուսանքի:

Իսկ ի՞նչ էր պատահել: Պարզվեց, որ ուսուցչուհին դաս լսող հյուրերի մոտ դասին անպատրաստ ներկայանալու համար նրան խիստ նկատամբել էր: Նա վիրավորվել էր: Հավաքարարուհին դասամիջոցին ընկերների հետ նրա բաշկոտուքն ու գզվռտուքը որակել էր իբրև խուլիգանություն: Երկու դեպքում էլ իր նկատմամբ, նրա կարծիքով, մեծ անարդարություն էր տեղի ունեցել, որը նրան հունից հանել էր, իր հերթին մղել ծայրահեղության:

Այո, շատ կարևոր բան է չափի զգացումը պահպանելը:

### 13. «... ԸՆԴ ԱՍՏԵՂՈՔ Ի՞ՆՉ ԿԱ ՍԻՐՈՒՆ, ՔԱՆ ՋԱՆՋԿԱԼԻ ԵՂԲԱՅՐ ԱՆՈՒՆ»

Հնարավոր է և այսպես. որոշ խախտումների գնալով՝ ստեղծել անխախտելի բարեկամություն:

Յոթերորդցիների հետ մի փոքր շրջանցել էինք դպրոցական խիստ կարգ ու կանոնը: Ամենայն հավանականությամբ դրա կարիքը չկար, կարելի էր մեր ցանկացած վայրը գնալ ոչ վերջին դասի հաշվին: Բայց երեխաները շատ էին ոգևորվել, նրանց անհամբերությունը փոխանցվեց ինձ: Բացի այդ, մի հրապուրիչ ծրագիր էլ ունեի. անցկացնել գրականության բացօթյա դաս: Վերջին հաշվով հաճախ ցանկություն է լինում նաև ոչ թե պարապելու, հարցնելու, քննելու, գնահատելու, այլ պարզապես՝ գրականության մասին զրուցելու: Ցանկանում ես դասագիրքը մի կողմ դնել ու լսել միանգամայն ինքնուրույն, համա[illegible]ով, թեկուզև՝ հիպարամերժ կարծիքներ: Մտավոր կարողությունների սահմանները որոշելն ավելի հեշտ է լինում այդ ժամանակ: Գնացինք, որովհետև չկարողացա նաև յոթերորդցիների աչքերում վառվող ցանկության առաջ... իմ աչքերը փակել: Սրբավայր էինք գնալու, հուզվել էին, պսակ պատվիրել:

Հաջորդ օրը դպրոցում բավական մեծ աղմուկ էր ինձ սպասում: Դասարանական արտահերթ ժողով էր հրավիրվել: Գրեթե բոլորը պատժվել էին, նախազգուշացվել: Ակնարկ էր եղել, թե գուցե ե՞ս եմ դրդել նրանց: Ինձ հետո պատմեցին, թե այդ ակնարկը դասարանում ինչպիսի անպատմելի աղմուկ բարձրացրեց: Անկեղծ ասած՝ ազդվեցի: Հանպատրաստից գրոհով հերքել էին, ընդդիմացել ասվածին:

Մի խախտում բերել էր անխախտելին:

### 14. ՉՈՐԱՑՎԱԾ ԾԱՂԻԿՆԵՐ ԿԱՅԻՆ ՏԵՏՐՈՒՄ

Ութերորդ «գ» դասարանը շատ համերաշխ է: Մանրմունր վեճերը չհաշված՝ իրար չեն վիրավորում, հակառակը՝ ինչով կարող են, միմյանց օգնում են: Մեկի ծննդյան օրն է՝ միասին են նշում, մեկը հիվանդացավ՝ բոլորն էլ այցելում են: Մի խոսքով՝ օրինակելի դասարան է: Ու հանկարծ... ամպրոպ՝ պարզ երկնքում, Հրանուշը մտածեց-մտածեց, անխտիր բոլորի հետ իր մտքերը կիսեց ու որոշեց օրինակ ցույց տալ. առաջ ինքը դադարեց Հերմինեի հետ խոսել. վայել բա՞ն է, չորացրել է Բագրատի նվիրած դաշտային ծաղիկները և պահում է տետրում: Տիգրանուհին Հրանուշից ետ չմնաց. լսվա՞ծ բան է, Բագրատը գրականությունից «չորս» ու «հինգ» ստանա, անգիրներն էլ դերասանի պես է արտասանում: Ու այդպես դասարանը հետզհետե երկու մասի բաժանվեց: Այսպես՝ «լքյալները» էլ իրենց կողմնակիցներն ունեին: Տարեսկզբից ժողով չէին արել, հիշեցին այդ փրկարար հավաքի մասին: Օրակարգում ընդամենը մեկ հարց կար. իրավունք ունի՞ Բագրատը ծաղիկներ նվիրելու, իսկ Հրանուշն էլ՝ դրանք չորացնելու և պահելու: Հարցը երեք ժամ քննարկեցին: Բորբոքվեցին, կարդացած գըրքերից մեջբերումներ կատարեցին, ասույթներ հիշեցին: Հերմինեն անընդմեջ գոռում էր. «Ժամանակը չէ՜, ժա՜-մա՜-նա՜-կը՜ չէ՜»: Բայց թե ինչի՞ ժամանակը չէ, չասաց: Իսկ Հերմինեն ու Բագրատը նստել էին ինչպես դատապարտյալներ: Հաջորդ օրը իրար այլևս չէին բարևում:

Ինչու՞, ի՞նչ էր պատահել: Մեկն էլ լիներ՝ հարցներ. հարգելի ութերորդցիներ, իրավունք ունեի՞ք քննարկելու այդ հարցը և ընդունելու կացնի սրություն ունեցող որոշում:

Այս հարցին բարձրաձայն պատասխան մի տվեք: Մտմըտացեք ամեն մեկդ ձեր մեջ, ձեզ դնելով Բագրատի և Հրանուշի տեղը: Խորհեք այն պահերին, երբ ծով կհիշեք, մեղմ ալիքների տարուբերում, երբ Տերյան կարդալու, երաժշտություն լսելու կամ վերջալույսը նկարելու ցանկություն կունենաք:

### 15. ԵՐԿՈՒ ԴՐՎԱԳ

Հինգերորդ դասարանում անցնում ենք Հրանտ Մաթևոսյանի «Հացը» պատմվածքը: Պատմվածքի վերջում դպրոցահասակ տղան, որն այդ օրը չէր կատարել հոր ասածը, ոչընչով չէր օգնել նրան տընտեսության աշխատանքներում, խորհում է, թե ինքն արժանի՞ է, արդյոք, կերած մի կտոր հացին: Հանձնարարեցի փոքրիկ շարադրություններ գրել: Վարդանը գրել էր. «Իմ հայրիկի գործը դժվար է, ծանր: Նա աշխատում է: Նա է ինձ

համար գնել կոստյում, վերնաշապիկ: Մայրիկս առավոտվանից տանը աշխատում է, հոգնում, բայց դադար չունի: Մեզ համար նա միշտ համեղ ուտելիքներ է պատրաստում: Այլևս «երկու» չեմ ստանա, որ արժանի լինեմ նրանց արածին»:

Եթե, ուսուցչի սովորությամբ, ասեմ, թե՝ ով այդպես է մտածում, թող ձեռք բարձրացնի, համոզված եմ, որ շատ-շատերդ եք Վարդանին համակարծիք: Հասկանալի՞ է, իջեցրեք ձեռքերը:

Չորրորդցիները հնարելու մեծ վարպետներ են դառնում, երբ դասին անպատրաստ են գալիս: Բարոն Մյունխհաուզենն անգամ չի կարող մրցել նրանց հետ: Ստեղծագործական երևակայությունը հատկապես Ղուկասի մոտ է խիստ զարգացած: Կմկմում է, հետո մտքերը հավաքում ու սկսում անվերջանալի պատմություններ անել: Օրինակ.

— Չեմ սովորել, որովհետև... դե, հարևանի տունը հրդեհ ընկավ...

Հետո, իհարկե, պատմում է իր քաջագործությունների մասին: Ոգևորության պահին նույնիսկ հիշատակում ստացած այրվածքները: Եթե գրի առնես, իսկական ֆանտաստիկ պատմվածք կդառնա: Միայն ոչ թե գիտա, այլ փչոցա-ֆանտաստիկ: Ու երեխաները ծիծաղում են:

— Ղուկա՛ս, հերի՛ք է, մըրսեցինք, ցուրտ է, վերջացրու:

— Քամի չէ՛, իսկական փոթորի՛կ, բուք ու բորան:

— Գոնե աղջիկներին խղճա:

— Փչա՛ն...

Ու Ղուկասը, մեկ էլ տեսար, սկսում է քրտնել: Հրդեհի պատմությունից հետո, ընդմիջման ժամանակ, մոտեցավ, ներողություն խնդրեց: Ավելի հեշտ չէ՞ դասը սովորել, քան ամոթից քրտնել:

ԱՐԱՄ ՀԱԿՈԲՅԱՆ

# ԵՐԱԶՆԵՐ ՊԵՍ-ՊԵՍ

Գիշերային մենության մեջ
Լռությունը ձյունի նման
Վերմակել է ողջ քաղաքը,
Ու լռել է ամենուրեք
Մանուկների աղաղակը...
Երազներ են հիմա տեսնում
Մանուկ ու ծեր խորը քնած,
Բայց արի տես, Արմենուհին
Ծիծաղում է ու աղմկում
Բարձին թիկնած...
Ու ասում է,
Որ տատիկը իր երազում
Հովնան պապի հետ է խոսում
Ձմռան մասին այս ցրտաշունչ:
Իսկ Արմենը
Երեք հատիկ սունկ է գտել,
Ամռան ծաղկած դաշտ է մտել
Ու քաղել է վարդի մի փունջ:
Իսկ հայրիկը, հավանաբար,
Ավտոտնակ է երազում,
Կանգնեցրել է իր մեքենան
Ձյան տակ, դրսում...
Իսկ մայրիկը երազում է,
Որ քույրիկս շուտ մեծանա,
Իր հոգսերը թեթևանան...
Իսկ ես շա՜տ, շա՜տ փոքրիկ եմ դեռ,
Ինձ ասում են գարնան թիթեռ,
Աչիկներս եթե փակեմ
Ու երազի կախարդական
Դուռը թակեմ,
Գիտե՞ք ինչեր պիտի տեսնեմ՝
Խնձորենու ծաղկած այգի
Ու ծաղկունքում գեղեցկատես
Մի սիրամարգ՝ փոքրիկ ինձ պես:

Նկարը՝ ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ




**ՌԱՖԱՅԵԼ ԻՇԽԱՆՅԱՆ**
բանասիրական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

ԶՐՈՒՅՑ ԵՐՐՈՐԴ

# Մի քիչ լեզվաբանություն

Ինչպես ամեն մարդ մի ընտանիքի անդամ է կամ որևէ ընտանիքից է ծագել, այնպես էլ ամեն մի լեզու որևէ լեզվաընտանիքի անդամ է: Ամեն լեզու ունի իր մայրը և քույրերը:

Այդպես, աշխարհում շատ լեզվաընտանիքներ կան: Հիշենք դրանցից մի երկուսը: Սեմական լեզվաընտանիք, որի մեջ մտնում են արաբերենը, ասորերենը, հրեերենը, հին ասուրաբաբելերենը և այլն: Իբերակովկասյան ընտանիք, որի մեջ մտնում են վրացերենը, լազերենը, աբխազերենը, ավարերենը և այլն: Թուրքական լեզվաընտանիք, որի մեջ մտնում են յակուտերենը, կիրգիզերենը, ուզբեկերենը, ղազախերենը, ադրբեջաներենը, թուրքերենը և այլն: Հնդեվրոպական լեզվաընտանիք, որի մեջ մտնում են հնդկերենը, պարսկերենը, հայերենը, հունարենը, լիտվերենը, լատվիերենը, սլավոնական լեզուները՝ (ռուսերեն, չեխերեն, ուկրաիներեն և այլն), գերմաներենը, ֆրանսերենը և այլն:

Ամեն մի լեզվաընտանիք ունեցել է իր մայր լեզուն, որից «ծնվել են» դուստր լեզուները:

Կարևոր է հիշել, որ լեզուն ժամանակի ընթացքում փոփոխվում է, զարգանում, նաև՝ տրոհվում, այսինքն՝ մասերի բաժանվում: Լեզուն հաճախ այնքան է փոփոխվում, որ նույն ժողովուրդը իր լեզուն, որը խոսել է 1000 տարի առաջ, դժվարությամբ է հասկանում: Օրինակ, Մեսրոպ Մաշտոցի խոսած հայերենը այսօր մենք դժվարությամբ ենք հասկանում և կոչում ենք գրաբար: Մաշտոցն էլ դըժվարությամբ էր հասկանում իրենից 1500 կամ 2000 տարի առաջ խոսված հայերենը: Այդպես ժամանակի ընթացքում փոփոխվում է լեզուն:

Լեզուն նաև տրոհվում, բաժան-բաժան է լինում, և այդպես առաջանում են բարբառները: Նոր լեզուներն էլ այդպես են առաջանում:

Հիշենք, թե ինչպես է բազմանում միաբջիջ ամեոբան՝ տրոհվելով, մասերի բաժանվելով: Մայր ամեոբան բաժանվում է մասերի, և առաջանում են նոր ամեոբաներ: Այդպես էլ լեզուներն են բազմանում: Ժամանակի ընթացքում մայր լեզուն բաժանվում է մասերի, և առաջանում են նոր լեզուներ, որոնք իրար նկատմամբ քույրեր են:

Նոր առաջացած լեզուներն իրարից տարբերվում են, բայց և շատ կողմերով իրար նման են, քանի որ իրենց բառերի ու քերականության մի մասը ժառանգել են միևնույն մորից: Այդպես, հնդեվրոպական ընտանիքի լեզուներն իրարից շատ տարբեր են, բայց նրանց մեջ կան և շատ նմանություններ: Օրինակ, վերցնենք հայերեն սիրտ բառը, որը մեր լեզուն ժա-

ռանգել է մայր հնդեվրոպական լեզվից: Այդ նույն բառը միևնույն իմաստով, բայց քիչ ձևափոխված ժառանգել են նաև հնդեվրոպական մյուս քույր լեզուները. լատիներեն՝ **սիրդս**, լիտվերեն՝ **շիրդ** (իս), ռուսերեն՝ **սերդ** (ցե), հին պարսկերեն՝ **զըրըդ**, գերմաներեն՝ **հերց** և այլն: Կամ՝ հայերեն **դուռ** բառը, որը նույնպես մայր լեզվից է գալիս և մյուս քույր լեզուներում որոշ չափով փոփոխված ձևեր է ստացել. հին հնդկերեն՝ **դվար**, լիտվերեն՝ **դուռոս**, գերմաներեն՝ **տյուռ**, ռուսերեն՝ **դվեր** և այլն:

Այսպիսով, ինչպես հնդեվրոպական ընտանիքի մյուս լեզուները, հայերենը ևս ծագել է հնդեվրոպական մայր լեզվից: Եթե մենք իմանանք, թե որտեղ է խոսվել մայր հնդեվրոպական լեզուն և երբ է նրանից առանձնացել հայերենը, կիմանանք, թե որտեղ ու երբ են առաջացել հայոց լեզուն ու նրանով խոսողները՝ հայերը:

Լեզվաբանները գիտական տարբեր միջոցներով որոշում են լեզվաընտանիքների ու նրանց մայր լեզուների հնագույն հայրենիքները: Այդպես որոշվել են սեմական, իբերակովկասյան, թուրքական, հնդեվրոպական և այլ լեզվաընտանիքների ու նրանց մայր լեզվի հնագույն հայրենիքը:

# Մի քիչ աշխարհագրություն

Աշխարհագրական այն տարածքը, որտեղ ծնունդ են առել հայերը և որտեղ ընթացել է հայոց պատմությունը, գտնըվում է Հարավ-արևմտյան Ասիայում (այդ շրջանը կոչվում է նաև Մերձավոր Արևելք): Սև և Կասպից ծովերը աշխարհագրական այդ շրջանի կարևոր նշաններն են: Սև ծովից ուղիղ հարավ ընկած է Փոքր Ասիան, որի արևելյան մասերից սկիզբ է առնում մի մեծ լեռնաշխարհ: Այն տարածվում է դեպի հյուսիս, արևելք, հարավ: Դա կոչվում է Հայկական լեռնաշխարհ: Նրանից սկիզբ են առնում մի քանի մեծ գետեր՝ Եփրատը, Տիգրիսը, Քուռը, Արաքսը: Եփրատը Հայկական լեռնաշխարհի արևմուտքից, իսկ Տիգրիսը՝ միջին մասից, հոսում են դեպի հարավ, դուրս գալիս Հայկական լեռնաշխարհից և անցնում սարահարթով: Այդ երկու գետերի արանքում գտնվող երկիրը կոչվում է Միջագետք: Դա Հայաստանի հարավային հարևանն է, որ ինքն էլ շատ հետաքրքրական ու փոթորկալի պատմություն է ունեցել: Միջագետքի հարավում Եփրատն ու Տիգրիսը միանում են և թափվում Պարսից ծոցը: Իսկ Արաքսն և Քուռ գետերը սկիզբ են առնում Հայկական լեռնաշխարհի արևմտյան մասերից, Սև ծովից հարավ՝ և հոսում են դեպի արևելք, ապա միանում են իրար ու թափվում Կասպից ծովը:

Հայկական լեռնաշխարհի հիմնական մասը հնուց ի վեր կոչվել է Մեծ Հայք: Դա եղել է հայ ժողովրդի պատմության գլխավոր շրջանը: Նրա տարածքը 300 հազար քառակուսի կիլոմետրից քիչ ավելի էր: Մեծ Հայքը հարավում սահմանակից էր Միջագետքին, հյուսիսում նրա սահմանը Քուռ գետն էր, արևելքում՝ Կասպից ծովը, արևմուտքում՝ Եփրատի մի մասը: Արաքսը հոսում էր Մեծ Հայքի միջով՝ արևելքից արևմուտք: Այս երկրամասն ուներ երեք մեծ լճեր՝ մեկը կոչվում էր Նաիրի կամ Վանա ծով, մյուսը՝ Սևանա կամ Գեղամա լիճ, երրորդը՝ Կապուտան կամ Ուրմիո լիճ:

Մեծ Հայքից արևմուտք ընկած էր Հայկական լեռնաշխարհի մյուս մասը՝ Փոքր Հայքը, որ շուրջ 50 հազար քառակուսի կիլոմետր էր: Հետագայում Հայաստանի մի մասը դարձավ նաև Կիլիկիան, որ գտնվում է Միջերկրական ծովի ափին:

Հայերի ծագումը ճիշտ պատկերացնելու համար պետք է հիշել, որ Հայկական լեռնաշխարհը զբաղեցնում էր Փոքր Ասիայի արևելյան մասը և ձգվում էր դեպի արևելք՝ մինչև Կասպից ծով և Պարսից սարահարթ կոչված շրջանը:

Լեզվաբանների ամենանոր ուսումնասիրությունները ցույց են տվել, որ հնդեվրոպական մայր լեզվի ու նրանով խոսող մայր ժողովրդի հնագույն բնակավայրը եղել է Փոքր Ասիան՝ սկսած նրա միջին մասերից և ներառյալ Հայկական ամբողջ լեռնաշխարհը: Այդպիսով հնդեվրոպական մայր լեզուն հնչել է Փոքր Ասիայի կենտրոնական մասերից սկսած, հայկական լեռնաշխարհում, մինչև Կասպից ծով և Պարսից սարահարթ (որոշ գիտնականներ կարծում են, որ այդ շրջանը հասել է մինչև Հնդկաստան): Ահա, հնդեվրոպական մայր ժողովուրդն իր այդ հին հայրենիքում էլ տրոհվել է,

բաժան-բաժան եղել: Առաջացել են մայր լեզվից ծագած քույր լեզուներով խոսող մի շարք ցեղեր: Այդ ցեղերի մի մասը նոր արոտավայրեր որոնելով սկսել է հեռանալ Փոքր Ասիայից և Հայկական լեռնաշխարհից: Նրանցից շատերը գնացել են Եվրոպա: Իսկ մի մասն էլ մնացել է տեղում, դրանցից են խեթերը, հույները, հայերը, իրանցիները, թոխարները և այլն:

Իսկ ե՞րբ է կատարվել հնդեվրոպական մայր լեզվի ու նրանով խոսող մայր ժողովրդի տրոհումը:

Գիտնականների մեծ մասի հաշվումներով, դա կատարվել է մոտավորապես մ. թ. ա. 4-րդ հազարամյակում, տևել է շատ երկար՝ 500, գուցե 1000 տարի:

Նշանակի, հայերը հնդեվրոպական մայր ժողովրդից անջատվել են մոտավորապես մ. թ. ա. 4-րդ հազարամյակում, այսինքն՝ մեզնից շուրջ 5500 տարի առաջ: Այդ ժամանակներից էլ սկսվում է հայոց պատմությունը:

Ինչպես ցույց են տալիս ուսումնասիրությունները, մ. թ. ա. 3-րդ հազարամյակի վերջում հայկական ցեղերն արդեն զբաղեցնում էին Մեծ Հայքի զգալի մասը: Լեզվաբան Օլեգ Շիրոկովը ցույց է տվել, որ մ. թ. ա. 3-րդ հազարամյակի վերջում Փոքր Ասիայի հարավ-արևմուտքում գտնվում էին հույները, նրանցից արևելք՝ հայերը, սրանցից էլ արևելք՝ իրանական ցեղերը: Արևմուտքից հայերի հին հարևաններն են եղել նաև խեթերը, որոնք այլևս գոյություն չունեն:

Այդպես ուրեմն, հայոց լեզուն և նրանով խոսողները՝ հայերը, ծագել են Հայկական լեռնաշխարհ կոչված վայրում և այսօր ավելի քան 5000 տարեկան են:

Գիտնականները, ինչպես ասացի, որոշել են նաև այլ լեզվարնտանիքների ու նրանց մայր լեզուների հնագույն հայրենիքները. օրինակ, սեմական մայր լեզվի հնագույն հայրենիքը եղել է Միջագետքի ու Արաբիայի շրջակայքում, մինչև Աֆրիկայի հյուսիսային շրջանները, իբերակովկասյանինը եղել է Կովկասում՝ Քուռ գետից հյուսիս, թյուրքականինը՝ Կենտրոնական Սիբիրում և այլն: Կան նաև լեզուներ, որոնց ընտանիքը և հնագույն հայրենիքը դեռևս որոշված չէ: Դրանցից են, օրինակ, հայոց լեզվի հնագույն հարևանները՝ խուռիերենը և շումերերենը:

(շարունակելի)



ՀԱՅԿ ԽԱՉԱՏՐՅԱՆ

# ՏԵՂԱՆՈՒՆԸ ՀՈՒՇԱՐՁԱՆ Է



## ԱԿՆԱ ԼԻՃ

Ակնա լիճը գտնվում է Աբովյանի և ...ամոյի շրջանների սահմանագլխին, Գեղամա լեռնաշղթայի կատարային սարավանդի վրա: Ոչ ոք չի հիշում, թե երբվանից է Ակնա լիճ կոչվում: Հայոց աշխարհի լճերի անունների ծնունդները ավելի խորն են խրված անցյալում, քան իրենք լճերը՝ երկրի դարափոխումներում:

Գեղամա երկրում մի գեղուհի էր ապրում Ակն անունով: Սա մի մատանի ուներ, որ տասներկու ժամ լույս էր տալիս, տասներկու ժամ՝ մթնում: Տոհմական գոհար էր, որ տատից թոռ, թոռից թոռ անցնելով՝ հասել էր Ակնին: Աշխարհում գիշեր ու ցերեկ էր լինում այդ մատանու շնորհիվ: Առանց նրա աշխարհն ու մարդիկ կմնային մթության մեջ:

Ակնը սիրում էր Գագ պատանուն,

շատ էր սիրում: Ուր որ է՝ նրանք պետք է պսակվեին: Սակայն մի անգամ Գագը Ակնին ասաց.

— Գիտե՞ս, Ակն, ես մի նվեր եմ կոտել:

— Ի՞նչ նվեր:

— Քո մատանու համար մի այնպիսի պատյան եմ սարքել, որ այն լույս կտա միայն ինձ ու քեզ:

— Իսկ մյուս մարդի՞կ:

— Թող մնան մթության մեջ: Ես չեմ հանդուրժի, որ իմ կնոջ մատանին լուսավորի նաև մյուսների օրը:

— Դու համաձայն ես, որ աշխարհը մնա մթության մե՞ջ:

— Այո, ես ու դու երբ ուզենանք՝ գիշերը ցերեկ կդարձնենք, ցերեկը՝ գիշեր:

— Ես քեզ նման մարդու կին չեմ դառնա,— ասաց Ակնը և մատանին շպրտեց դեպի երկինք, որ արեգակ դարձավ և մինչև այժմ գիշեր ու ցերեկ է արարում բոլոր մարդկանց համար:

Գազազած Գագր ընկավ աղջկա ետևից, բայց չկարողացավ բռնել: Ակնը լեռան կատարից իրեն նետեց ջրի մեջ: Եվ աղջկա անունով այն կոչվեց Ակնա լիճ:

# ԱԿՆԵՐ

Հայկական Կիլիկիայի Բարձրբերդ և Ցախուտ գավառների սահմանագըլխին, Կիլիկյան Տավրոսի հարավային լանջին, Ակներ անունով մի գյուղ է եղել: Հայոց Լևոն Մեծագործ թագավորը 1198—1203 թվականներին այստեղ կառուցել է Ակների կամ Ականց վանքը, որը մեկ-երկու տարում դարձել էր հայ գրչության, մանրանկարչության և գիտության մեծահռչակ կենտրոն: Հրաշագործների մենաստան էր: Այստեղ մեկ տարում այնքան ձեռագիր մատյաններ էին ընդօրինակում և այնպիսի շքեղ մանրանկարներ անում, որ դրանցով կարելի էր պերճարվեստի մի թանգարան ստեղծել:

Ակներր Հայկական Կիլիկիայի ամենագողտրիկ անկյունն էր: Մի պճեղ հողակտորի վրա բխում էին բազմաթիվ աղբյուրներ, որի համար էլ այս վայրը հնուց ի վեր կոչվել է Ակներ: Վանքն անվանակոչելու ժամանակ Լևոն Մեծագործ թագավորը նորաթուխ վանահորն ասել է.

— Մայր հողի բաբախումները երկրի վրա ակնաղբյուրներ են դառնում, իսկ իմաստուն մտքի բաբախումները՝ մարդկանց հոգիները վեհացնող ակներ: Հետևապես՝ Ակներ պիտի կոչել նաև ձեր վանքը:

Լևոն Մեծագործը շատ էր սիրում Ակներր: Երբ զգաց, որ հասել է իր կյանքի օրապատին, Սիս մայրաքաղաքից ճամփա ընկավ դեպի Ակներ, բայց հազիվ Վահկա հասած՝ մեռավ 1219 թվականի մայիսի 2-ին: Կտակի համաձայն Լևոն Մեծագործի սիրտը թաղեցին Ակներում, մարմինը՝ Սիսում: 1375 թվականի հունվարի 5-ին Եգիպտոսի սուլթան Մելիք Աշրաֆի զորքերը պաշարեցին Սիսը, մի քանի գրոհ ձեռնարկեցին, բայց չկարողացան գրավել: Սուլթանի զորքի մեջ լուր տարածվեց, թե Ակների վրա սավառնող Լևոն Մեծագործի ոգին պաշտպանում է նաև Սիսը: Եվ սուլթանը ետ դարձավ, նախ հիմնովին կործանեց Ակներր և դրանից հետո միայն գրավեց Սիսը:

# ԱՐԿ ՈՒՌԻ ԱԿՈՌԻ

Պապս հավատում էր, թե այս գյուղից հին գյուղ չի եղել ոչ աշխարհի այս կողմում, ոչ էլ մյուս կողմում: Մեծ ջրհեղեղից հետո Նոյ նահապետը Մասիսի լանջին տնկում է խաղողի ողկուզաբեր մի ճյուղ, որ հին հայերենում հնչում էր այսպես՝ արկ ուռի: Արկ ուռի, արկ ուռի ասելով՝ այդ վայրը և այդտեղ հիմնադրված գյուղը կոչվեց Արկուռի, ապա՝ Ակոռի:

Սա միակ գյուղն էր Մասիսի կատարամերձ լանջին:

Ակոռին կործանվեց և ժայռաբեկորների տակ մնաց 1840 թվականի հուլիսի 2-ի երկրաշարժի ժամանակ: Արարատ նահանգի Մասյացոտն գավառի այս գյուղը Հռոմի երկու տարիքն է ունեցել:

**ԱՇԽԵՆ ԱԲԱՋՅԱՆ**

# Հաշտություն

Նկարը՝ ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

— Էս ի՞նչ աշխարհ է, կատուն էլ մուկ չի բռնում,— ձայնը գլուխը գցած՝ թաղով մեկ բողոքում էր Ոսկեհատը,— մկներն ինձ ուտում են, հարյուր հատ կատու եմ բերել, ամեն մեկը երկու օրից հետո թողել, փախել է: Թաղեմ դրանց գլուխը:

Ոսկեհատը գանգատվելով դիմեց հարևանի հարսին.

— Ասյա ջան, բժշկուհի ես, մի ճար արա: Մի քիչ ձեր հիմնարկից մկնդեղ բեր, բալքի էս անտերներին կոտորի, պրծնեմ: Հալալ հաց ու ջուր չունեմ:

Հարևանի հարս Ասյան սանէպիդկայանի բժշկուհի էր, մկնդեղը նրա ցուցումով էին բաժանում:

— Մեղավորը դու ես, Ոսկեհատ տատի, — ձայնեց գյուղատնտես Վաղոն իրենց պատշգամբից,— յուղոտ պատառը կատվին ես տալիս, հետո սպասում, որ մկան վրա հարձակվի՞:

— Մեղավորը քո կնիկն է, դուք եք: Աղբանոցը ամեն տեսակ ուտելիքի մնացորդներով լցնում եք, շունն ու կատուն իրար հետ անուշ են անում, քիչ է մնում խմիչք էլ տաք, որ իրար կենաց խմեն: Էդքանից հետո կատուն կմտածի՞ մկներով յոլա գնալ:

Ուսուցիչ Եփրեմն անցնում էր փողոցով: Այս խոսակցության վրա ոտքը կախ գցեց, նայեց նրանց կողմը, բազմանշանակ «հը՜մ» արեց:

— Վարժապետ, դու լինես, քո ջանի արևը,— Ոսկեհատը հիմա էլ սրան կպավ,— ճիշտ չե՞մ ասում:

— Որ աշխարհը շատ է փոխվել, դու ճիշտ ես, բայց ի՞նչ անենք, ամեն բան բնական հունից դուրս է եկել: Գայլը որ գայլ է, հիմա ամենատուժեղ լուսարձակից չի վախենում, իսկ առաջ ճրագի լույսից փախչում էր, մարդկանց հարայ-հրոցից՝ լեղապատառ ծլկում, հիմա՞...,— ուսուցիչը բազմանշանակ դադար տվեց: Դա նրա սովորությունն էր՝ բառերն ու խոսքերը այնպես շեշտադրել, որ լսողները անհամբեր դառնային:

Տրակտորիստ Գևորգը իրենց բակում տախտակ էր տաշում, գործը ընդհատեց, որոշեց առաջ գնալ, խառնվել խոսակցությանը:

— Դուք կատվից ու մկնից եք ասում, ես էլ մեր շան ձեռքից եմ կրակում մնացել: Հենի ձեր սուրբ պատվից, յոթ լակոտ է միանգամից լույս աշխարհ գցել:

Ամուսնուն բորբոքված արձագանքեց տիկին Մարգոն:

— Հազար եմ ասել՝ տար կորցրու, տանըդ ոսկու քարավան չունես, որ դրանք պահես:

— Կենդանիներին պետք է սիրել,— ուսուցիչ Եփրեմը նրան ընդհատեց: Մարգոն ավելի բորբոքվեց, իսկ Ոսկեհատը անես մոռացավ մկներին ու կատուներին, անցավ թափառական շներին:

— Դրանց գլուխն էլ էդտեղ թաղեմ, ճամփու մեջտեղը վեր են ընկնում կամ խմբերով ցանկապատերի տակ շարվում, վախենում ես կողքներով անցնել:

— Որ ճամփու մեջտեղը խմբերով շարվում են, դա ճիշտ է, բայց վախենալու բան չկա, որովհետև շները հիմա այնքան են ծուլացել, որ երեխաները փորձի համար պառկած շան պոչը կոխում են, շունն աչքը բացել ու հաչել: Կռանում ես, որ գուլպադ ուղղես, կարծում են՝ իրենց հարվածելու համար քար ես վերցնում, վնգստալով փախչում են: Ի՞նչ վախենալ, ծիծաղում ես:

— Էհ, ու՞ր գնացին առաջվա շները,— ուսուցիչ Եփրեմը ափսոսանքով հոգոց է հանում,— գայլ էին խեղդում, արջի վրա հարձակվում, իրենց պատիվը պաշտպանում:

Զրույցը գնալով խաղաղ երանգ ստացավ, սկսեցին հիշել անցած գնացածը, երանելի ժամանակնե՜ր... Ծանր երկու ամսականից կապելուն սովորեցնում էին: Ամեն տուն դռանը կապած շուն ուներ՝ երկաթե ծանր շղթան վզին, ազատությունից զրկված: Նրանք էլ չարանում էին ու պատահած շնչավորի վրա ողջ կատաղությամբ հարձակվում: Շների հաչոց էր, որ գիշերները տարածվում էր գյուղով մեկ: Երեխաները սոված մնային,



տան տղամարդուն գուցե այնքան էլ ցավ չըպատճառեր, որքան որ հանկարծ տանտիրուհին շան լափն ուշացներ, վայն եկել-տարել էր նրան.

— Օրվա հացի կարոտ տունն էլ էր շուն պահում,— հիշում է Ոսկեհատը,— հիմա ո՞ր ունեցողն է իր ունեցվածքը շան հույսին թողնում։

— Սովորույթ էր,— ուսուցիչ Եփրեմը նորից բամանշանակ գլուխը տմբտմբացրեց։— Շղթան խեղճ շան վզին այնքան էին թողնում, որ եթե հանկարծ կապը կտրում էր՝ մարդ էր ուտում։ Օրինակներ՝ ինչքան ուզեք, կասեմ։

Հետո անցան այսօրվա շան ու կատվի մտերմությանը։ Ու՞ր են առաջվա կատուները։ Շուն տեսնելիս գոմի կտուրն էին թռչում թափով, մեջքները ուռեցնում, ֆշշացնում ու պատրաստվում հարձակվելու։ Շուն եմ ասում, որ դիմանա նրա հարձակման թափին։ Պատերազմական հակառակորդներ էին, հիմա բարեկամացել են, իրար դունչ են լիզում։ Ոսկեհատի կարծիքով պատճառը սննդառատ աղբանոցներն են։ Ուսուցիչ Եփրեմը ավելի խոր հիմքեր է տեսնում. պատճառը այժմյան բարեկեցիկ կյանքն է։

— Չկա բարիք, առանց չարիքի,— եզրահանգում է ուսուցիչը։

Բարիքը հասկանալի է, չարիքն էլ այն է, որ շներն ու կատուներն էլ շուն ու կատվի նման չեն, ապրում են ինքնագլուխ ու բազմացել, լցվել են փողոցները, իրենց քեֆին խմբերով թափառում են։

Տրակտորիստ Գևորգենց տնից հարևանները ամեն առավոտ բազմազան ձայներ էին լսում։ Նախ ութամյա Տիգրանիկն էր տզզում, հետո շունն էր վնգստում, հետո Մարգոն անեծքակոլոլ էր անում երկուսին էլ, վերջում՝ զայրույթը թափում ամուսնու գլխին։ Տիգրանիկն ու հարևան Վաղոյի Արթուրիկը իրար հետ մրցման մեջ մտած, փողոցում թափառող պատահած շանը բռնում էին ու տանում, ամեն մեկը իրենց այգու ծառերից կապում։ Երեկոյան, երբ Մարգոն աշխատանքից վերադառնում էր, շների բանակը տեսնելով, պայթում էր միանգամից։ Վերջը տեսավ հնար չկա, հարևաններն էլ նախատեցին, ամոթանք տվին, թե՝ կնիկ ես, հանգիստ խոսիր, երեխային հանգիստ հասկացրու, ի՞նչ ես ձայնդ թաղով մեկ անում։

— Դե լավ,— Մարգոն զենքերը ցած դրեց,— Տիգրանիկ ջան, էդքան շատ շներ մեզ պետք չեն։ Հաշվիր, որ դրանք բոլորը քոնն են, թող իրենց համար ման գան, դու մի հատ լավը ջոկիր՝ փոքրիկ, առողջ, բեր հե-

տը խաղա, հաց ու ջուր տուր:

Տիգրանիկը մորը լսեց: Այդ ջոկած փոքրիկ շունը, ահա, մեծացել, յոթ թուլա է աշխարհ գցել: Տիգրանիկը՝ թաղի երեխաներին գլխին հավաքած, հիանում էր քոթոթներով: Անտերներն էլ այնքան գեղեցիկ են, որ ուզում ես անընդհատ նայել ու գուրգուրել: Երեխան տարվել է շնիկներով, կերակրում է ու լողացնում, դասերին էլ տեր չի կանգնում, աչքաթող է արել: Մայրը դրա համար է նեղսրտում:

— Ասում եմ՝ տար, կորցրու,— ասում է ամուսնուն,— գնա երեխայիդ մասին մտածիր, դաս չի սովորում:

— Վաղը տանելու եմ:

Ամեն անգամ ասում էր, բայց լույսը չըբացված՝ աշխատանքի էր շտապում: Շատ անգամ աննկատ դուրս էր գալիս, համարյա փախչում:

—Քո վաղն էլ գիտեմ:

— Երեխաների արևը,— մի օր էլ հաստատուն վրա բերեց նա,— վաղը մորն էլ լակոտների հետ տանելու եմ: Թող գնան ուրիշ շների նման հանդերում վայրենանան:

Մյուս օրը Մարգոն Տիգրանիկին հացցըրեց, կերակրեց, որ դպրոց ուղարկի: Գևորգն էլ պատրաստվեց, որ կատարի երեկվա խոստումը: Տիգրանիկը տնից դուրս եկավ, հայրը՝ ետևից: Մարգոն սեղանը հավաքում էր, բայց գործը թողեց, ինքն էլ իջավ: Տիգրանիկը պայուսակը ցած դրեց, շնիկներին մեկմեկ գրկեց ու համբուրեց, հետո քիթը վեր քաշեց ու աչքերը թևքով մաքրեց: Գևորգը տխուր դիտում էր այս տեսարանն ու ծխում: Մարգոն առանց ձայն հանելու իսկույն տուն մտավ:

Քոթոթները այդ օրն էլ մնացին, իսկ հաջորդ օրվա երեկոյան, երբ Մարգոն աշխատանքից տուն էր դառնում, դռան մոտ Տիգրանիկին հանդիպեց՝ երկու շնիկ թևերի տակ, մայրը՝ հետևից:

— Էդ ու՞ր ես տանում,— հարցրեց Մարգոն:

— Տանում եմ՝ կորցնեմ: Պապան ասաց՝ քո շնիկներն են, ուր ուզում ես՝ տար, մամայի աչքից հեռացրու: Հիմա տանում եմ,— մեծավարի պատասխանեց,— տանում եմ այգիներ գնացող ճամփին թողնեմ: Մյուսներն էլ եմ տանելու:

Տիգրանիկը խոսում էր առանց մորը նայելու, գլուխը խոնարհած:

— Մի տար,— ասաց մայրը զգացված ու մեղմ տոնով,— մի տար, բաղա ջան, դեռ շատ են փոքր, ավտոյի տակ կընկնեն: Թող մեծանան, իրենց ոտքով գնան:...



**ՄԽԻԹԱՐ ՈՍԿԱՆՅԱՆ**



# ԳՈՐԻՍ

## ԱՅԳԻՆԵՐԻ ԵՎ ԱՂԲՅՈՒՐՆԵՐԻ ՔԱՂԱՔ

**Գորիս քաղաքն ունի 4 գործարան, 7 դպրոց, 6 մանկապարտեզ, 2 կինոթատրոն, հիանալի կուլտուրայի պալատ...**

Օդանավակայանից ոլորապտույտ ճանապարհը իջնում է Գորիս: Քաղաքը ձորի մեջ է, ձորը ափսեաձև է, լայն, տափարակավուն: Այգիներն այնքան շատ են, որ ուղղագիծ ու կանոնավոր զուգահեռներով շարված տները թվում են նոսր, իրարից հեռու:

Առաջին բանը, որ այցելուին գրավում է՝ տների ինքնատիպությունն է, դռներն ու պատուհանները կամարակապ են: Այսպիսի ուրույն, համընդհանուր տեսքի միայն Գորիսում կարելի է հանդիպել: Ոճի այդ միասնականությանը նպաստում է նաև շրջանում կազմակերպվող ամենամյա «Օրինակելի տուն», «Օրինակելի փողոց» և «Օրինակելի ձեռնարկություն» մրցույթը: Հաղթողը պարգև է ստանում, և տան, փողոցի ու ձեռնարկության վրա փակցնում են համապատասխան ցուցանակ:

Քաղաքի չորս դարպասներից ամեն մեկին մոտենալիս այցելուին մի հուշարձան-աղբյուր է դիմավորում, հրավիրելով, թե՝ խմիր, ճամփորդ, ծարավդ թող հագենա ու նոր ներս համեցիր:

Իսկ քաղաքում... Մի տեղ գործարանի ցանկապատն է հուշարձան-աղբյուրի վերածվել, մի այլ տեղ՝ հսկայական մի ժայռ, երրորդում՝ հուշարձան է բազմակն աղբյուրն իր շքեղ կառույցով: Շատ են և դեռ ավելի են շատանալու՝ որոշված էր 40-ամյակին ընծայել 40 աղբյուր: Կառուցումներն սկսվել են, և շուտով այգիների քաղաք Գորիսը կըդառնա նաև աղբյուրների քաղաք:

Հին Գորիսը, որ քաղաքից բաժանված է Վարարակն գետով, հեռվից բուրգերի նըմանվող կարմրատափիտակավուն ժայռերի անտառ է հիշեցնում: «Բուրգերում» տասնյակների հասնող ժայռափոր բնակարաններ կան, որ երբեմն այնքան բարձր են՝ ժայռի գագաթին մոտ, որ, ըստ երևույթին, բնակիչները օգտվել են պարանե սանդուղքից և վտանգի ժամանակ սանդուղքն հավաքելով՝ պաշտըս-



պարվել։ Այրերից վերջին բնակիչը հեռացել է 1964 թվականին։ Այժմ հին Գորիսը պատմաճարտարապետական արգելանոց է, ուր նոր շինություններ չեն կատարվում։

Գորիսի և Խնձորեսկ գյուղի ժայռափոր բնակավայրերը, Տաթևի, Նորակերտի ինքնատիպ կառույցներն ու հրաշալի, փարթամ բնությունը ամեն տարի մեր Միության տարբեր ծայրերից ու արտասահմանյան երկըրներից եկած բազմաթիվ զբոսաշրջիկների զարմանքն ու հիացմունքն են շարժում։

## ՎՐՁՆԻ ՈՒ ԿԱՎԻ ԼԵԶՈՒՆԵՐՈՎ

Արդեն երկու տարի է, ինչ Գորիսում բացվել է Երևանի գեղագիտական կենտրոնի մասնաճյուղ։ Մասնաճյուղի տնօրենը Մարտին Զաքարյանն է՝ մասնագիտությամբ նըկարիչ։ Երբ ավարտվում են պարապմունքները, ընկ. Զաքարյանի համար սկսվում է աշխատանքային օրվա երկրորդ՝ արտածրագրային շրջանը, որ երբեմն տևում է մինչև ուշ գիշեր։ Նա իր սաների աշխատանքների համար պատրաստում է շրջանակներ, նը-





ՄԱՐԳԱՐԻՏ ԳՐԻԳՈՐՅԱՆ, 7 տ.

ՍԼԱՎԻԿ ՀՈՎՍԵՓՅԱՆ, 5 տ.

Լուսանկարները՝
ԳԱԳԻԿ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆԻ

կարների տակ տեղադրվող ստվարաթղթերը ներկում ստեղծելով անհրաժեշտ ֆոներ, որպեսզի նկարներն ավելի լավ դիտվեն: Արդեն շրջանակների մեջ են հնգամյա Սլավիկ Հովսեփյանի 16 նոր աշխատանքները: Շուտով թանգարանի պատերից մեկը կզարդվի և Սլավիկի նկարները այցելուների հետ կըխոսեն գույների լեզվով:

Թանգարանի «Հյուրընկալված նկարներ» բաժնում ցուցադրված են Լեհաստանից, Ռումինիայից, Բուլղարիայից, ԳԴՀ-ից, Հարավսլավիայից, Շրիլանկայից, ԱՄՆ-ից, Հընդկաստանից, Ճապոնիայից, Ֆրանսիայից, Ավստրիայից, Իտալիայից և մեր երկրի համարյա բոլոր հանրապետություններից ստացված նկարչական աշխատանքներ՝ կատարված երեխաների ձեռքով: Այդ նկարների հեղինակները կարողացել են վրձնի լեզվով իրենց ազգային կոլորիտը այնքան բնորոշ արտահայտել, որ անմիջապես զգում ես եթե ոչ բոլորի, ապա մեծ մասի ազգային պատկանելությունը:

Գորիսի գեղագիտական կենտրոնի մասնաճյուղն իր հերթին մասնաճյուղեր ունի Խընձորեսկ, Քարահունջ և Տեղ գյուղերում: Հաճախ Գորիսի երեխաների աշխատանքները ցուցադրվում են գյուղերում, իսկ գյուղերինը՝ Գորիսում: Թանգարանում իրենց անկյունն ունեն նաև մանկապարտեզի երեխաները, որոնցից ուշագրավ է չորսամյա Արտակ Մարտիրոսյանի պատերազմական թեմաներով նկարաշարը:

Գորիսը բրուտագործության հայրենիք է, և զարմանալի չէ, որ թանգարանը աչքի է ընկնում խեցեգործական նմուշներով: Խեցեգործության ուսուցիչը՝ Հրանտ Բաղդագուլյանը, 1977 թվականին Մոսկվայի ժողտընտեսության ցուցահանդեսում ոսկե մեդալ է շահել: Նրա աշխատանքներին հանդիպում ենք քաղաքի զբոսայգի-հրապարակում և կուլտուրայի պալատում: Գործին նվիրված ուսուցիչը իր փորձն ու գիտելիքները սիրով է հաղորդում սաներին: Այդ երևում է թանգարանի ցուցանմուշներից:



Գորիսի պիոներտան պարի խումբը

## ՊԻՈՆԵՐՏՈՒՆԸ

Երկհարկանի, գեղեցիկ այս շենքում սըմենաաչքի ընկնողը Մարտական, Աշխատանքային և Փառքի թանգարանն է, ուր ծանոթանում ենք Զանգեզուրի ազատագրման մասնակիցների կյանքին ու գործունեությանը, լուսային քարտեզի՝ վրա մի անգամ ևս դիտում հերոս քաղաքները՝ ակնածանքով նայելով այդ քաղաքներից բերված արյունով սրբացած հողին: Զոհվածների ավարտական վկայականները, գովասանագրերը, նամակներն ու մահվան թղթերը ստիպում են մեզ լռել, մտածել այն մասին, որ նրանք դեռ պատանի էին, երբ գնացին ինձ ու քեզ, մեր նմանների այսօրը արյամբ փրկելու: Մեծ

Հայրենականում շրջանից զոհվել են 2559 մարդ: Սովետական Միության հերոսներ Սուրեն Առաքելյանի, Գուրգեն Արզումանյանի, Արամայիս Սարգսյանի և Գրիգոր Գալըստյանի անուններով դրուժինաներ են անվանակոչվել: Նրանց նվիրված ալբոմները լի են սխրագործությունների պատմություններով:

Փառքի սրահում ցուցադրած ՏՈՒ—144 գերձայնային մարդատար ինքնաթիռի մոդելը իր ծննդավայրի պիոներտանն է նվիրել Սովետական Միության հերոս, փորձարկող օդաչու, ինքնաթիռի առաջին հրամանատար Էդուարդ Յոլյանը:

Պիոներտան լուսավոր և լավ կահավորված սենյակներում պարապում են շյուղագործության, հմուտ ձեռքերի, նկարչության, թատերական, կերամիկայի, լուսանկարչության, պարի ու հայրենագիտական խմբակները: Թե Գորիսում որքան են սիրում պարը, երևում է պարի խմբերի ու մասնակիցների քանակից: Պիոներտունն ունի 6 պարի խումբ, որտեղ պարապում են 180 պիոներներ: Անցած տարի պիոներտան պարարվեստի խմբակների սաները հանրապետական գեղարվեստական ինքնագործունեության փառատոնում արժանացան երկրորդ կարգի մրցանակի: Խմբակներից առավել աչքի է ընկնում շյուղագործությանը, որի ղեկավարն է Ամալյա Սարգսյանը:

Ցավալի է, որ այս ամեն լավի կողքին բարեկամության սենյակը թեև լայն է ու լուսավոր, ցուցանմուշներով աղքատ ու անշուք տեսք ունի:

## ԱԿՍԵԼ ԲԱԿՈՒՆՑԻ ԱՆՎԱՆ ԴՊՐՈՑՈՒՄ

Պիոներտան ընդարձակ ու լուսավոր շինությունից հետո Բակունցի անվան դպրոցը չափազանց նեղվածք է թվում. նույնիսկ ուսուցչանոց չկա, իսկ պիոներսենյակը տեղավորված է... դահլիճի բեմում, դահլիճն էլ իր հերթին՝ աշակերտների թվի համեմատ շատ փոքր է ու անշուք: Մոտ 500 աշակերտների համար նախատեսված դպրոցում սովորում են ավելի քան 800 աշակերտներ: Երկու զուգահեռ դասարանների փոխարեն, դպրոցում հարմարվել, տեղավորվել են երեքը: Ծրագրված է ամռանը դպրոցին կից լրացուցիչ շինություն կառուցել, բայց դա նույնպես քիչ կլինի դպրոցի կարիքները բավարարելու համար: Դպրոցը 100 տարվա պատմություն ունի: Քաղաքի առաջին դպրոցն է եղել, բացվել է 1884 թվականին՝ ամենայն հայոց կաթողիկոսին ուղղված Գորիս քաղաքի բնակիչների խնդրանքով: Առաջին ուսուցիչները Ներսիսյան դպրոցի շրջանավարտներն են եղել:

Բակունցի անվան դպրոցն այժմ էլ ունի որակյալ ուսուցիչներ: Դպրոցի դիրեկտոր ընկեր Սևլիկյանի վկայությամբ՝ տարիներ են եղել, երբ դպրոցի շրջանավարտները ամբողջ դասարանով ընդունվել են բուհ: Դպրոցի շրջանավարտներից երկուսը՝ Համո Յոլյանն ու Սերո Խանզադյանը, սոցիալիստական աշխատանքի հերոսներ են: Դպրոցի տասը շրջանավարտ դարձել են դոկտորներ, 40-ից ավելին՝ գիտության թեկնածուներ, 10-ը՝ վաստակավոր ուսուցիչ, իսկ Գորիս քաղաքի տասնյակ ղեկավար աշխատողներ այս դպրոցի սաներն են:

Հրաժեշտ ենք տալիս Բակունցի անվան դպրոցին, հուսալով, որ մեր հաջորդ այցելության ժամանակ այս արժանավոր կրթօջախը կտեսնենք բարեփոխված, մեծ ու լուսավոր, նոր դասասենյակներով ու ժամանակակից հարմարություններով:

## ԱՇԽԱՏԱՆՔԻ ՊՏՈՒՂՆԵՐԸ ՔԱՂՑՐ ԵՆ

Աշխատանքի և հանգստի հինգ ճամբար են գործում շրջանում, բարձր դասարանցիների 5 արտադրական ջոկատներ և աշակերտական 13 արտադրական բրիգադներ: 1577 աշակերտներ են մասնակցում արդյունաբերության, շինարարության և հիմնականում գյուղատնտեսության աշխատանքներին: Իրենց տրամադրված հողամասերում աշակերտները մշակում են կերի ճակնդեղ ու կարտոֆիլ: Առանձին օղակներ զբաղվում են անասնակերի հարցերով, կուտակում խոտ, սենաժ, սիլոս և ծղոտ:

1984 թվականին աշխատանքային քառորդը լավագույն ձևով նախապատրաստելու և անցկացնելու համար շրջանն արժանացավ ՀԼԿԵՄ Կենտկոմի, ՀՍՍՀ լուսավորության մինիստրության և ՀԱՄԽ-ի փոխանցիկ դրոշին: Իսկ Տաթևի, Խնձորեսկի, Քարահունջի և Տեղի դպրոցների բրիգադները պարգևատրվեցին փոխանցիկ վիմպելներով: Տաթևից Սամվել և Համլետ Մկրտչյանները, Իրինա Արշակյանը, Կոռնիձորից՝ Գևորգ Միքայելյանը, Խնձորեսկից՝ Սաշիկ Մինասյանը պարգևատրվեցին ՀԼԿԵՄ Կենտկոմի պատվոգրերով: Կարմեն Գյուրջյանն ու Անժելա Բաղդասարյանը ստացան ՀԼԿԵՄ Կենտկոմի կրծքանշաններ: Իսկ Հեղինե Ծալունցը՝ Գորիս քաղաքից, պարգևատրվեց արտասահմանյան ուղեգրով:

Աշխատանքի պտուղները քաղցր են, ոգեշնչող, գորիսեցիները մտադիր չեն փոխանցիկ դրոշը զիջել մեկ այլ շրջանի:

ԹԱԴԵՎՈՍ ՏՈՆՈՅԱՆ

# Շատ չէ՞ր մեկ դասամիջոցի համար

Ծտապում էի Երևանի միջնակարգ դպրոցներից մեկը: Ուզում էի տեսնել, թե ինչ կյանք է հոսում այդ արտաքուստ գեղեցիկ պատերի ներսում: Գնացի ուրախ-ուրախ, բայց դպրոցն ինձ դիմավորեց մռայլ. դուռը բանալիով պինդ փակված էր: Ներսում դասամիջոց էր: Թրխկթրխկացրեցի դռան ապակին: Մի բարձր դասարանցի առջին, իմ ճիգերը տեսնելով՝ ապակեպատ դռան ճեղքից իբր կատակ արեց. «Դպրոց հո չի, բերդ է»: Ակամա՝ ես էլ ժպտացի:

Վերջապես ինձ հաջողվեց դպրոց թափանցել: Դռնապանը զգույշ մի հայացք գցեց շուրջբոլորը, նոր միայն դուռը բացեց:

— Պապի, ինչու՞ եք դռները փակել,— մի քիչ սրտնեղած հարցնում եմ ես:

— Է՜, տղա ջան, որ դռները բաց թողնեմ, դպրոցում մարդ չի մնա:

— Ինչպե՞ս...

— Էդպե՛ս...

Մտածեցի, որ ծերունին նույնպես կատակ է անում: Միջանցքով առաջանում եմ ու... մի թմբլիկ աղջիկ իր յոթանասուն կիլոգրամանոց մարմնով թպրտում է հատակին, քիչ այն կողմ մեկ ուրիշը աստիճաններից ուղղակի ցած է գահավիժում: Սա երևի արդեն կատակ չէ: Ու ես էլ եմ զգաստանում:

Այս դպրոցի աշակերտների շրջանում, ինչպես երևում է, ընդունված է դասամիջոցներին իրար հրելն ու ոտ պահելը, իրար վիրավորական խոսքեր ասելը:

Մի տարեց մարդ՝ սև կոստյումով, ակնոցներով, շրջում է միջանցքներում: Հավանաբար դիրեկտորն է: Բայց դիրեկտորը միևնույն ժամանակ չի կարող մի քանի տեղում լինել: Օրինակ՝ այստեղ մի տղա ոտքով հարվածում է գետնին ընկած հացի կտորը և վազելով ու մի քանիսի հետ բախվելով, կորչում աշակերտական բազմության մեջ: Այնտեղ՝ մի աշակերտ է դուրս գալիս ճաշարանից՝ թթվասերով թաթախված: Դիրեկտորը չի կարող ամեն ինչ նկատել, լինել ուզած տեղում: Հայացքով որոնում եմ նրան և գտնում մի խուլ անկյունում՝ մի բարձր դասարանցի աշակերտուհի հետ բարկացած զրուցելիս:

Ինձ ոչ մի կերպ չի հաջողվում գտնել ջոկատավարին: Վերադառնում եմ դեպի դուռը: Դռնապանի հետ վիճում է թըթվասերով թաթախվածը: Դռնապանը նրան չի թողնում դուրս գալ դպրոցից: Վստահ չէ, որ չարաճճին շորերը փոխելուց հետո դպրոց կվերադառնա:

Զանգը հնչում է: Միջանցքները կամաց-կամաց դատարկվում են: Բայց մի քանիսը 8-րդ «բ»-ից դասի չեն գնում:

— Ազատ ենք,— ասում են նրանք,— Էլիզը չի եկել:

Ո՞վ է Էլիզը: Ուսուցչուհի՞... Այդ դեպքում ինչու՞ Էլիզ:

— Էլիզն ո՞վ է,— հարցնում եմ նրանց:

— Ռուսերենի դասատուն,— պատասխանում են խմբով:

— Ազգանունն ի՞նչ է, չգիտե՞ք:

— Ծախնազարովնա...

— Ծախնազարովա...

— Ծախնազարյան...,— մի քանի հոգով ուղղում են միմյանց:

— Երևի՝ Շահնազարյան,— ասում եմ ես:

— Երևի, բայց մենք նրան ազգանունով չենք դիմում...

Դպրոցից դուրս գալիս զրուցում եմ դռնապանի հետ:

— Մենք էլ էինք երեխաներ, սրա՞նք էլ,— ցավված սրտով ասում է նա:

Երևի ճիշտ է պապիկը: Հիշեցի հացը հարվածող աշակերտին: Բայց գուցե պապիկը մի քիչ ծայրահեղության մեջ էր ընկած, մտածում եմ ես:

Գուցե այս բոլորը արտաքին տպավորություն է: Եթե նույնիսկ այդպես է, մեզ չհանդստացնենք: Զուգադիպությու՞ն էր, որ դպրոց մտնելիս տեսա, թե ինչպես տղաներից մեկը ոտ պահեց թմբլիկ այն աղջկան, մյուսն աստիճանների վրայով գլորվեց ցած, մի տղա լողաց թթվասերի մեջ, մեկ ուրիշին դիրեկտորը մի անկյուն քաշած՝ հանդիմանում էր, մի աշակերտ ոտքով հարվածում էր հացը, ջոկատավարը տեղում չէր, իսկ դիրեկտորը միևնույն պահին չէր կարող մի քանի տեղում լինել: Այս բոլոր զուգադիպությունները շատ չէի՞ն հինգ րոպե տևող մեկ դասամիջոցի համար: Համաձայնեք, շատ-շատ էին, իսկ դասամիջոցն էլ առաջինն էր, ոչ թե վերջինը:



# «ՓԵՏՐԱՎՈՐ ՌՈՒՄԲԵՐԻ» ՊՐՈԲԼԵՄԸ

Առաջին հայացքից թվում է, թե հսկա օդանավերի համար, որոնք կշռում են մի քանի հարյուր տոննա, թեկուզև ամենախոշոր թռչունները ոչ մի լուրջ վտանգ ներկայացնել չեն կարող: Սակայն դա միայն թվում է:

Այն օրվանից, ինչ մարդը ստեղծել է թռչող ապարատը, առաջացել է և մինչև այսօր գոյություն ունի ինքնաթիռների և թռչունների պրոբլեմը:

... 1910 թվականին աէրոպլանը թռչում էր Կալիֆորնիայի Լոնգ-Բիչ նեղուցի վրայով: Հանկարծ աէրոպլանին բախվեց դիմացից թռչող որորը: Աէրոպլանի վնասվածքը այն աստիճան լուրջ էր, որ ինքնաթիռը ցած գահավիժեց: Օդաչուն զոհվեց:

Առաջին համաշխարհային պատերազմի ժամանակ թռչունների հետ ինքնաթիռների ճակատագրական բախումները բավականին հաճախակի դարձան: Այդ տարիներին նույնիսկ փոքր թռչունները խիստ վտանգավոր էին այն ժամանակվա ոչ հզոր և թռիչքային փոքր բարձրություն ունեցող ինքնաթիռների համար:

... Ճնճղուկը թռիչքի ժամանակ հարվածեց բրիտանական զինված ուժերի հետախուզական ինքնաթիռին: Օդաչուն ստիպված էր լուրջ վնասվածք ստացած ինքնաթիռը մի կերպ իջեցնել ուղղակի բլրաշատ տեղանքում:

Մի անգամ ջրածիծառը, թռչելով ինք-

նաթիռին դեմ հանդիման, այնպիսի ուժով բախվեց օդաչուի դիմացի ապակուն, որ ապակին փշրելով՝ թռավ ամբողջ թափքի միջով, ջարդեց ետին պատը և խրվեց ծանրոցային բաժնի մեջ: Այս անգամ, բարեբախտաբար, ոչ ոք չտուժեց: Ինքնաթիռը հաջողությամբ վայրէջք կատարեց:

Երկրորդ համաշխարհային պատերազմի ժամանակ ամերիկյան կործանիչը, մեծ արագությամբ ընթանալով, մ խ ր ճ վ ե ց սարյակների երամի մեջ: Աղետը հնարավոր չեղավ կանխել. ինքնաթիռը քարի նման ներքև ընկավ և կործանվեց:

Օդագնացության համար առավել մեծ վտանգ են ներկայացնում համեմատաբար խոշոր թռչունները՝ սագերը, կռունկները, արագիլները, ճկնկուլները, արծիվները, գիշատիչները:

Ամերիկյան օդաչու՝ Ռոյ Լանկաստերը լրագրողների հետ ունեցած զրույցի ժամանակ ասել է. «Մենք թռչուններից ավելի շատ էինք վախենում, քան զենիթայիններից: Գերմանացիները մեր թռիչքների ժամանակ ուղղակի օդ պետք է բարձրացնեին իրենց բոլոր թռչուններին»: Ամերիկյան մի ուրիշ օդաչու, որ ներկա էր զրույցին, ժպտալով ավելացրեց. «Նրանք այդպես էլ վարվում էին»: Իհարկե, դրանք դառնորեն ասված խոսքեր են, իրականում այդ թռչունները հավասարաչափ վտանգավոր էին թե՛ գերմանական և թե՛ ամերիկյան ու մյուս բոլոր ինքնաթիռների համար:

Հետպատերազմյան տարիներին ինքնաթիռները կատարելագործվել են և թռչում են ավելի բարձր: Մեծ բարձրությունների վրա (10—12 կիլոմետր) համեմատաբար քիչ թռչուններ են հանդիպում, հետևաբար, նման աղետների հավանականությունը փոքրանում է: Սակայն այս դեպքում ինքնաթիռներին վտանգ է սպառնում բարձրություն վերցնելու և իջեցնելու ժամանակ: Բացի այդ, նման մեծ բարձրությունների վրա արծիվներ հաճախ են հանդիպում: Այսօր էլ խոշոր, բարձր թռչող թռչունները առաջվա նման մեծ վտանգ են ներկայացնում ժամանակակից խոշոր օդանավերի համար:

«Իզվեստիա» թերթի 1964 թ. նոյեմբերի 18-ի համարում կարդում ենք. «Ռեակտիվ ինքնաթիռը, որով այս տարվա հոկտեմբերի 31-ին մարզական թռիչք էր կատարում Ֆրիմենը՝ տիեզերական թռիչքների համար նախապատրաստվող ամերիկական խմբերից մեկի օդաչուն, օդում բախվեց սագի հետ: Թռչունը հարվածեց ինքնաթիռի ֆյուզելյաժին, նրա մարմնի կտորները ընկան ռեակտիվ շարժիչի մեջ և շարքից դուրս բերեցին այն: Ֆրիմենը, ըստ երևույթին, փորձել էր խափանված շարժիչով ինքնաթիռը մի կերպ հասցնել մոտակայքում գտնվող օդանավակայանը: Համոզվելով, որ այդ չի հաջողվի, Ֆրիմենը բացեց ինքնաթիռի լյուկը և պարաշյուտով դուրս նետվեց: Սակայն բարձրությունը աննշան էր, և պարաշյուտը չհասցրեց բացվել»:

Ըստ ամերիկյան վիճակագրության, ԱՄՆ-ի տարածքում շաբաթվա մեջ երկու անգամ նման դեպքեր են արձանագրվում: Դրանք ավելի հաճախակի են դառնում թռչունների գարնանային և աշնանային չուի ժամանակ, և ներկայումս դա այնքան լուրջ պրոբլեմ է, որ շատ երկրներում ուսումնասիրություններ են կատարվում օդում ինքնաթիռների և թռչունների բախման դեպքերը նվազագույնի հասցնելու համար:

Հաշվարկված է, որ բադի մեծության թռչունը բախվելով օդաչուների խցիկի գնդակի համար անթափանց ապակուն, որի հաստությունը երեք սանտիմետր է, ջարդում է այն: Դա համազոր է 800 հազար մթնոլորտային ուժի ճնշման:

Հաճախ են եղել դեպքեր, երբ արծիվները հարձակվել են ինքնաթիռների վրա: Այդ փաստը առաջին համաշխարհային պատերազմի ժամանակ գրավեց հակաօդային պաշտպանության մասնագետների ուշադրությունը՝ ծնելով ֆանտաստիկ գաղափար. իսկ հնարավոր չէ՞ արդյոք արծիվներին վարժեցնել գրոհելու թշնամու ինքնաթիռների վրա: Եվ իսկապես, 1916 թվականին Ֆրանսիայում 6 արծիվների վարժեցրին այդ նպատակի համար: Սկզբում նրանց սովորեցրին չվախենալ ինքնաթիռների աղմուկից և կրակոցներից: Այնուհետև մսի կտորներ էին ամրացնում ինքնաթիռների մեծ մոդելների վրա և արծիվներին սովորեցնում էին կերակրվել դրանցով: Ի վերջո արծիվները վարժեցվեցին նման կերակրմանը: Դրանից հետո թռչուններին փորձեցին օդային մարտերում: Ցավոք, այս հետաքրքիր գիտափորձերի արդյունքների մասին տեղեկություններ չկան:

Ներկայումս գիտնականները այս պրոբլեմի լուծման ուղիներ են փնտրում: Օդագնացության մասնագետները խոր-

հրրդակցելով թռչնաբաններրի (օրնիտոլոգ) հետ, պարզում են թռչունների չուերի ամենահավանական երթուղիները և «չվացուցակները»: Կազմվում են մանրամասն քարտեզներ, թե թռչունների որ տեսակները տարվա որ եղանակին ինչ երթուղիներով և ինչ բարձրության վրա են թռչում: Չուի քարտեզները տրամադրվում են օդագնացության մասնագետներին, որոնք դրանց հիման վրա ճշտում են ինքնաթիռների թռիչքային ուղիները: Ինքնաթիռների չվացուցակները (գարնանային և աշնանային) կազմելիս աշխատում են ընտրել այնպիսի երթուղիներ, ինքնաթիռների թռիչքի այնպիսի բարձրություններ, որոնք հնարավորին չափ հեռու լինեն թռչունների չուի սովորական ուղիներից: Մյուս միջոցը ինքնաթիռների հետ հաճախ հանդիպող թռչուններին վախեցնելն է: Մի քանի տասնյակ նման թռչուններ են որսում, ծեծում նրանց և սարսափի ճիչերը գրանցում մագնիտոֆոնի ժապավենի վրա: Այնուհետև գրանցումները մի քանի տասնյակ անգամ ուժեղացնելով, դնում են ձայնարկող հատուկ սարքավորումների մեջ և տեղադրում օդանավակայանների շրջակայքում: Սարքավորումները գործում են գիշերցերեկ: Արտասահմանյան մի շարք քաղաքների (հատկապես այն վայրերում, որտեղ շատ վայրի թռչուններ են բնակվում) օդանավակայաններում մշտապես կարելի է լսել թռչունների խիստ ուժեղացրած այդ սարսափի ճիչերը, որոնք վախեցնում են շրջակայքում գտնվող այլ թռչուններին: Լսելով «աղետի» մեջ գտնվող իրենց ցեղակիցներիահաբեկված ճիչերը, թռչունները սարսափահար հեռանում են:

Որոշ երկրներում (այդ թվում նաև ՍՍՀՄ-ում) փորձեր են արվում նման ձայնագրությունները տեղադրել անմիջապես թռչող օդանավերի վրա: Եվ որպեսզի աղմուկը չխանգարի ձայնագրություններին, աշխատում են նվազեցնել ինքնաթիռի աղմուկը և ընդհակառակը, ուժեղացնել թռչունների ձայնագրված ճիչերի հզորությունը:

Այնուամենայնիվ, պրոբլեմը մնում է չլուծված, օդագնացության համար «փետրավոր ռումբերը» դեռևս մեծ վտանգ են ներկայացնում:

ԼԵՎՈՆ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ
Կենսաբանական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

ԿԱՐՈ ՄԵԼԻՔՍԵԹՅԱՆ

# Ուղտը

Մի տաք գոմում, ձմռան կեսին,
Գառներն էին ապրում խաղաղ,
Մեկ էլ՝ հեռու անապատից
Անտեր-անտուն մի ուղտ եկավ:
Գոմի դուռը թակեց դրսից:
— Ո՞վ է,— գառներն ասին ներսից:
Ուղտը խնդրեց.
— Անցորդ եմ խեղճ,
Կանգնած դաժան էս ցրտի մեջ,
Իմ մի ոտքը ցուրտն է տարել,
Մյուս ոտքս էլ՝ կարգին սառել,
Ձեր հերն ու մերն ապրած կենան,
Դուք ծերպ արեք դուռը մի քիչ,
Իմ խառած ոտքը տաքացնեմ՝
Ծարունակեմ ճամփաս նորից:
Խորհուրդ արին գառներն էսպես.
— Թողնե՞նք, թե՞ ներս չթողնենք գա,
Մեռք է, թող ոտքն իր տաքացնի,
Խեղճն ի՞նչ վնաս պիտի մեզ տա:
Ծերպ արեցին, և ուղտը մեծ
Սառած ոտքը ներս մտցրեց:
Ապա ասաց.
— Իմ ձագուկներ,
Տեսա՞ք, վնաս չտվի ձեզ,
Աղաչում եմ, թույլ տվեք ինձ
Մյուս ոտքն էլ մտցնեմ ներս,
Մի ոտքս որ բան չարեց ձեզ,
Մյուսն էլ ձեզ վնաս չի տա:
Գառներն ասին.— ճիշտ է ասում,
Էդ մի ոտքն էլ թողնենք ներս գա:
Դուռը մի քիչ էլ բացեցին,
Էդ բացելն էր, և ուղտը մեծ
Մյուս ոտքով, գլխով և իր
Ողջ մարմնով ներս խցկվեց:
Ներս ընկավ՝ իր վզից կախված
Եվ գոմի դուռ և շրջանակ,
Խեղճ ու անզոր մի քանի գառ
Տրորելով ոտքերի տակ:
Էս որ տեսան սարսափահար,
Գառներն ելան ու փախան դուրս,
Անիծելով սխալն իրենց
Ու ուղտի վարքն ուխտադրուժ:
Ուղտն ապշահար նայեց նրանց.
— Ի՞նչ են զուր տեղ մայում-բայում,
Եվ նեղվածք են պատճառում ինձ
Եվ դառնում են ինձ անիծում:

ԼԵՎՈՆ ՀԱԽՎԵՐԴՅԱՆ
Բանասիրական գիտությունների դոկտոր




## ԻՆՉ ԱՆԵՆՔ, ՈՐ ՄԵԶ ԼՍԵՆ ՈՒՇԱԴԻՐ

Երբ մենք խոսում ենք, ելույթ ենք ունենում՝ ի՞նչ նպատակ ենք հետապնդում։ Մեր համոզմունքներով ունկնդիրներին համակելու, մեր համոզմունքներն նրանցը դարձնելու նպատակը։ Այդ բանին հասնելու համար մենք պետք է կարողանանք ազդել նրանց տրամաբանության (մտքի) և զգացմունքների (սրտի) վրա։

Ուրեմն, մեր խոսքն էլ պետք է լինի տրամաբանական և զգացմունքային։

Չի կարող մեր խոսքը լինել տրամաբանված, եթե ճիշտ չենք որոշել վեճի առարկան։ Դա այնքան էլ հեշտ բան չէ։ Ես ներկա եմ եղել և մասնակից շատ և շատ բանավեճերի, որոնք արդյունքի չեն հասցրել այն պատճառով միայն, որ ելույթ ունեցողները չեն կարողացել որոշել բանավեճի, խոսակցության, ժողովի բուն առարկան։

Ի՞նչն է պատճառը։ Տրամաբանության կորուստը։ Կորուստն այն ճըշմարտության, որ հին աշխարհի մեծ հռետոր Կիկերոնը ձևակերպել է այսպես. «Հռետորի արժանիքներից մեծագույնն է՝ ասել այն, ինչ հարկավոր է և չասել այն, ինչ հարկավոր չէ»։ Սերվանտեսը գրել է. «Առանց մտածելու խոսելը նույնն է, ինչ առանց նշանառության կրակելը»։ Ավելացնենք, այդպես կրակելիս կարող ես հենց յուրայիններին վնասել։...

Ուրեմն, խոսելուց (ելույթ ունենալուց) առաջ հստակ որոշիր բանավեճի առարկայի, հետապնդված նպատակի սահմանները։ Այլապես՝ դատապարտված ես մատնվելու լսողի քամահրանքին։

Եվս մի կանոն, որ հիանալի ձևակերպել է Վ. Բելինսկին. «Վիճել կարելի է այն բանի դեմ միայն, որի հետ համաձայն չես, բայց որը, միևնույն ժամանակ, լավ ես հասկանում»։ Այո՛, հենց որ լսարանը նկատի, թե ինչպես ես դու քո իմացության «վերջին փըշրանքները հավաքում»՝ կորած ես։ Սա չի նշանակում, բնավ չի նշանակում, թե պետք է ցուցադրես քո ողջ իմացությունը (տեսեք, տեսեք՝ ինչքան բան գիտեմ), այլ պարզապես խոսես, ուրիշ խոսքով՝ բարձրաձայն մտածես, համեստ և ոչ երբեք ցուցադրական վստահությամբ։

Տրամաբանությանը վերաբերող մի կանոն ևս. խոսքը (ելույթը, ճառը) պետք է հարաճուն ընթացք ունենա և՛ ըստ ձայնի բարձրացման, և՛ ըստ մտքի խտացման։ Հակառակն ի նպաստ խոսողի չէ։ Ըստ որում, արագությունն էլ իր չափն ունի. մասնագետները հաշվել են, որ եթե խոսքն առանց դադարի (պաուզայի) հնչում է հինգուկես վայրկյանից ավելի՝ չի ընկալվում։ Այն էլ են հաշվել, որ եթե նախադասության մեջ կա ավելի քան 13 բառ՝ ունկնդիրները սկիզբը մոռանում են և չեն կարողանում հետևել մտքի ընթացքին։

Չեն ընկալվում, չեն կարողանում հետևել, ուրեմն, պարզ է՝ ուշադիր չեն լսում։

Այս ամենը վերաբերում է բանավոր խոսքի տրամաբանությանը, որ խոսում է լսողի մտքի, խելքի հետ։ Բայց մենք սկզբում ասացինք, որ ունկնդիրը մեկ ուրիշ հասցեատեր էլ ունի, որ սիրտն է, զգացմունքների ու հուզումների աշխարհը։

Խոսողը կարո՞ղ է դա աչքի առաջ չունենալ։ Իհարկե, ոչ։ Այլապես նա շատ բան կկորցնի՝ ունկնդրի վրա ազդելու երկու մեծ լծակներից մեկը։ Պարզեցնենք՝ անտրամաբան խոսքն անխելք է, անզգացմունք խոսքը՝ անսիրտ։ Ուրեմն, եթե ուզում եք, որ ձեզ լսեն ուշադիր (խոսքի գերագույն նպատակը), ապա ձեր խոսքը պետք է լինի ոչ միայն խելացի, այլև՝ սրտալի։ Թանկագին զուգակշիռ։

Բայց ի՞նչ պիտի անել, որ խոսքը լինի սրտալի, հուզական, զգացմուն-

քայլին: Չկա ավելի հեշտ բան, քան այս հարցին պատասխանելը՝ պարզապես պետք է հուզված լինել: Իսկ դա սարքելու բան չէ: Այս կամ այն խնդիրը քեզ կարող է և հուզել, և չհուզել: Եթե չի հուզում, մի խոսիր, քեզ ո՞վ է ստիպում, ճիշտ այնպես, ինչպես եթե ասելիք չունես՝ մի խոսիր, ո՞վ է ստիպում:

Ուրեմն, հուզելու համար պետք է ինքդ հուզված լինես, ուրիշ ելք չկա:

Ավելի դժվար է մյուս հարցի պատասխանը՝ ինչպե՞ս արտահայտել հուզմունքը բանավոր խոսքի մեջ:

Լավ է ազատությու՞ն տալ զգացմունքներին, թե՞ զգացմունքների սանձը ձեռքում պահել: Իհարկե, երկրորդը: Համոզվելու համար մտաբերեք տարբեր դերասանների՝ և՛ նրանց, որ հուզմունքի պահին ձայնը սաստիկ բարձրացնում են կամ արտասանում կերկերուն, լացակումած ձայնով, ձեռքերը վեր կարկառում, և՛ նրանց, որ կարողանում են «զգացմունքները ներս գցել», արտաքուստ կարծես ոչինչ չեն անում, սեռուն հայացքով նայում են մի կետի, բայց դու զգում ես, որ մարդու ներաշխարհը լեցուն է զգացմունքներով: Խոսելիս էլ այնպես են խոսում, այնքան հանգիստ, կարծես ոչինչ չի պատահել, բայց ինչ-որ բան, չես էլ հասկանում, թե ինչ, մատնում է հոգու խռովքը:

Այս երկու կարգի դերասաններից որո՞նք են ավելի հուզում, որո՞նք են ձեզ դուր գալիս: Իհարկե, երկրորդները: Նկանքում էլ նույնն է: Մեր ժողովուրդը դա զգացել է և արտահայտել «Լցվել եմ, լալ չեմ կարող...» անկրկնելի պատկերով:

Նույնն է պարագան նաև բանավոր խոսքի արվեստի մեջ, չէ՞ որ դա էլ արվեստ է: Պետք է ոչ թե խոսողը լաց լինի, այլ ունկնդիրը: Խոսողի (ելույթ ունեցողի) լացը կարող է նույնիսկ ծիծաղ հարուցել:

Հապա ինչպե՞ս վարվենք, եթե մեր խոսքը վերաբերում է մեր հոգին տակնուվրա անող, մեր լացը բերող երևույթների: Դա էլ իր գաղտնիքն ունի: Այդ դեպքում պետք է խոսել ոչ թե պաշարած հուզմունքների, այլ այդ հուզմունքները հարուցող երևույթների, պատճառների, իրողությունների մասին:

Եվ դա է ազդեցիկը:

Ուզու՞մ եք համոզվել: Այդ դեպքում, խնդրում եմ, այս տողերը կարդալուց հետո վերցրեք «Գիքորը» պատմվածքը և կարդացեք դրա վերջին էջը. հեղինակի կողմից՝ ոչ մի արտասվախառն խոսք, բացարձակորեն ոչ մի, այլ՝ շարքն այն իրողությունների, որոնք հարուցում են անդիմադրելի հուզմունք՝ արցունք քամելու աստիճան:

Օրենքը նույնն է ամենուրեք, բոլոր արվեստներում, նաև՝ խոսքի արվեստում: Ինչու՞: Որովհետև իրողությունն այդպես է բոլոր արվեստների ակունքում, որ կյանք է կոչվում:

Ի դեպ, խոսքը տպավորիչ դարձնելու, ուշադրություն հրավիրելու բազմաթիվ ուրիշ եղանակներ կան, որոնցից տարածված է հատկապես հռետորական հարցը: Այսօրինակ հարցը պատասխան չի ենթադրում, որովհետև պատասխանն արդեն իսկ հարցի մեջ է, որևէ մտքի հաստատում՝ հարցի ձևով: Ասենք թե՝ «կարո՞ղ եք գտնել մեկին, որ չուզենա արդարացնել անմեղ մարդուն», «ու՞մ է պետք այսքան սխալաշատ գիրքը», «ո՞վ է ասում, թե գիտնականը պետք է անպայման ցրված լինի»:

Այս զրույցի վերջին խորհուրդը. բանավոր խոսքի (ելույթի) մեջ սկիզբն ու վերջը շատ են կարևոր: Սկիզբը, որովհետև դա է շարժման մեջ դնում խոսքը: Հայտնի բան է, որ ամեն ինչ շարժման մեջ դնելն ավելի դժվար է, քան շարժումը պահելը (այստեղ լավ օգնական է իներցիայի ուժը): Վերջը, որովհետև դա ամփոփումն է, վերջնաշեշտն է ամբողջ խոսքի: Ուրեմն, դա էլ պետք է տպավորիչ լինի:

Դյուրին բան չէ խոսքի վերջակետը, ավարտակետը գտնելը՝ ինչքան ելույթներ ենք լսել ու նկատել, որ խոսողը տանջվում է վերջակետը գտնելու համար ու մեզ էլ տանջում է իր հետ: Այդ պատճառով նա ձգում է խոսքը՝ դառնալով շատախոս, ստիպված լինելով ասել անմիտ բաներ, որ երբեք չէր ասի, եթե կարողանար խոսքը ժամանակին ավարտել:

Ինչպես ես՝ այս տողերը գրելիս, որ հազիվ գտա այս զրույցի վերջակետը:

# Ուսումնարանը շրջանավարտի աչքերով

Արտակը մեր դասարանի հանրահայտ անկարգներից մեկն էր:

Դպրոցն ավարտելուց հետո ես նրան կորցրի, չիմացա՝ ուր գնաց, ինչ դարձավ:

... Մի անգամ հեռավոր Տինդա քաղաքում մտա հենց առաջին հանդիպած ճաշարանը:

— Դուք հա՞յ եք,— հարցրեց մատուցողը և ապա ավելացրեց.

— Մեր ավագ խոհարարն էլ է հայ:

Մի որոշ ժամանակ անց մոտեցող ոտնաձայներ առա: Շրջվեցի, Արտակն էր՝ ճաշարանի ավագ խոհարարը:

— Այս ամենը ես եմ պատրաստել, համե՞ղ է,— հպարտությամբ ասաց Արտակը:

Զարմացած նայում էի:

— Դպրոցն ավարտելուց հետո ընդունվեցի Երևանի № 28 միջնակարգ պրոֆտեխնիկական ուսումնարանը: Այն առաջին հայացքից ինձ շատ գեղեցիկ թվաց: Ուսումնարանի ընդարձակ բակը նման էր մի կատարյալ այգեստանի՝ ծաղիկներով, կանաչապատ արահետներով: Թենիսի մարզահրապարակները թաղված էին ծառերի ու ծաղիկների մեջ:

Արտակը պատմում էր, իսկ ես մտածում էի, թե ինչպես է կարողացել այդ մասին համադասարանցիներից ոչ մեկին ոչինչ չասելով, հանգիստ և բարեխղճորեն հաճախել դասերին:

— Ես, պարզապես,— շարունակում է նա,— սիրեցի այդ ուսումնարանը, մանկավարժական կոլեկտիվին: Ինձ շատ հրապուրեցին մասնագիտական գեղեցիկ կահավորված կաբինետները, գրադարանը, շախմատի սենյակը...

Ես լուռ լսում էի, իսկ Արտակը ոգևորված շարունակում էր.

— Ինձ հետաքրքրեց նաև ճագարաբուծական ֆերման, որ կառուցվում էր: Ուսումնարանի ղեկավարության և սովորողների ուժերով մենք այնտեղ պետք է աճեցնեինք ճագարների բազմաթիվ տեսակներ: Այդ գործը հատկապես նորեկներին էր շատ դուր գալիս:

Նա մտերմացել էր իր ուսուցման վարպետներ, հմուտ և շատ փորձառու մանկավարժներ Էլիզա Վելյանի և Էլմիրա Գրիգորյանի, ֆիզդեկ Սամսոն Հակոբյանի հետ:

Շատ ոգևորվել էր նաև պարի ինքնագործ խմբակով, որի մեջ իրեն ևս ընդգրկեցին, և իրենք հանրապետական օլիմպիադայում գրավեցին առաջին տեղը ու ստացան առաջին կարգի դիպլոմ: Բացի այդ, ուսումնարանը արժանացել է շատ պատվոգրերի և դիպլոմների, ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ Կարմիր դրոշին, տեղի շրջկոմի բազմաթիվ պատվոգրերի: Իսկ ՀՍՍՀ պրոֆտեխկրթության պետական կոմիտեի կողմից ուսումնարանն արժանացել է «Բարձր կուլտուրայի և օրինակելի ուսումնական հաստատություն» կոչմանը...

Երբ վերադարձա Երևան, որոշեցի անմիջապես այցելել այդ ուսումնարանը: Եվ անպայման ցանկացա տեսնել Արտակի ուսուցման վարպետներին:

Այդ օրը, երբ ես եղա ուսումնարանում, բացվել էր նկարչական ցուցահանդես, որ կազմակերպվել էր դիրեկտոր Կարլեն Կարապետյանի, ԼԿԵՄ բյուրոյի քարտուղար Գայանե Հակոբյանի և նկարչական խմբակի սաների ուժերով:

— Ընդունելության կարգը երևի շատերին կհետաքրքրի,— ասաց դիրեկտորը,— այն կատարվում է հարցազրույցի միջոցով: Մի խոսքով՝ ընդունվելու հնարավորությունները մեծ են: Հարկավոր է միայն աշխատասիրություն և ցանկություն:

ՀԱՐՈՒԹՅՈՒՆ ՊՈՂՈՍՅԱՆ

# ԳԻՏԵ՞Ք, ՈՐ...



Նկարը՝ ԿԱՐԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆԻ

Կայծակը հսկայական էլեկտրական կայծ է, որը հետևանք է ամպրոպի ժամանակ մթնոլորտային էլեկտրական դաշտի խիստ մեծացման: Կայծակներն առաջանում են կամ ամպերի միջև, կամ էլ ամպի և երկրի միջև: Կայծակի մեջ հոսանքի ուժը հսկայական է՝ 10000-ից մինչև 500.000 ա, իսկ ամպերի և երկրի միջև լարումը հասնում է $10^8$—$10^9$ վ-ի:

Կայծակին նախորդում է թույլ լուսատու ալիքի՝ լիդերի զարգացումը, որը սովորաբար տարածվում է ամպից դեպի երկիրը: Երբ լիդերը հասնում է երկրին, նրա ճեղքած ճանապարհով սլանում են մեծ լիցքեր՝ հսկայական արագությամբ՝ $10^7$—$10^8$ մ/վրկ: Այդ ժամանակ գլխավոր ալիքում տեղի է ունենում օդի ուժեղ տաքացում և առաջանում է հարվածող ձայնային ալիք՝ որոտ, որի դղրդյունը բացատրվում է ամպից և ուրիշ առարկաներից ձայնի բազմապատիկ անդրադարձումով:

Կայծակից պաշտպանվելու համար կիրառում են շանթարգելներ՝ հողի հետ լավ միացված և պաշտպանվող շինության ամենաբարձր կետից վեր ամրացված մետաղյա ձողեր: Փորձը ցույց է տալիս, որ շանթարգելի պաշտպանական ազդեցությունը տարածվում է մոտավորապես նրա երկարության կրկնապատիկին հավասար շառավղով:

Անհրաժեշտ է հիշել նախազգուշական մի քանի կանոններ: Ամպրոպի ժամանակ անջատեք հեռուստացույցը, ռադիոընդունիչը և մյուս էլեկտրասարքավորումները, մի օգտվեք հեռախոսից, ձեռք մի տվեք ջրի ծորակներին և ջրատար խողովակներին, մի մոտեցեք վառարաններին և ծխնելույզներին:

Էլեկտրական կայծի անցումը մարդու միջով հաճախ ավարտվում է ակնթարթային մահով, որը կապված է գլխուղեղի, սրտի և այլ ներքին օրգանների ջերմային վնասմամբ: Որոշ դեպքերում հնարավոր է խլություն, շնչառության ժամանակավոր դադար:

Առաջին օգնությունը կարելի է ցույց տալ անմիջապես դեպքի վայրում. եթե տուժողը ուշաթափ վիճակում է, ապա ամենից առաջ անհրաժեշտ է արձակել հագուստի կոճակները, պառկեցնել մեջքի վրա: Այնուհետև՝ վիրակապով կամ թաշկինակով բերանի խոռոչը մաքրել արյունից և անմիջապես տալ արհեստական շնչառություն՝ տուժողի բերանի մեջ օդ ներարկելով, կրծքավանդակի սեղմումով, ձեռքերը և ոտքերը շարժման մեջ դնելով: Առաջին օգնությունը ցույց տալուց հետո անհրաժեշտ է անմիջապես զանգահարել «շտապ օգնություն»:

ԽԱՉԻԿ ՀԱՄՐԱԹՅԱՆ

• Լոնդոնում գոյություն ունի մի ակումբ, որի անդամներն ապրում են հին տներում ու դղյակներում և չեն օգտագործում ինչ որ հայտնաբերվել է 1500 թվականից հետո: Վերջերս ակումբից վտարվեցին նրա երկու անդամները, որովհետև հեռախոս էին անցկացրել իրենց բնակարաններում:

• Ֆրանսիացիները կենդանիներ շատ են սիրում: Նրանք պահում են 9 միլիոն շուն, 7 միլիոն կատու (չորս ֆրանսիացուց մեկը շուն կամ կատու ունի), 4850000 թռչուն, 1.500.000 կրիա, 3 միլիոն կարմիր ձուկ և 5.800.000 համստեր (գերմանամուկ):

• Չմշկասահքը շատ հին պատմություն ունի: Հետազոտությունները ցույց են տվել, որ նախնադարյան մարդը սահում էր սառույցի վրա ձիու ոսկրերի միջոցով, որոնք տաշում, հղկում էր, տալով նրանց թիթեղիկի ձև և կաշեփոկերով կապում ոտքերին:



| | | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|---|
| a | + | в | − | c | + | d | = | a |
| + | | − | | − | | + | | : |
| k | − | в | + | c | − | h | = | в |
| = | | = | | = | | = | | = |
| xy | | z | | z | | xz | | y |

Տառերի փոխարեն 0, 1, 2, 3, 4, 5, 6, 7, 8 թվանշանները վանդակներում տեղադրել այնպես, որ հորիզոնական և ուղղահայաց ուղղություններով նշված մաթեմատիկական գործողությունները՝ գումարում, հանում, բաժանում, կատարելուց հետո պատասխանները ճիշտ ստացվեն։

## ԺԱՄԱՆՑ

«ՊԻՈՆԵՐ» № 10-Ի ԺԱՄԱՆՑԻ ՊԱՏԱՍԽԱՆՆԵՐԸ

1. 3 բույն, 4 ճագար։ 2. Աշոտին՝ 5, Համիկին՝ 3։ 3. Այբբենարան։






ՀԼԿՍՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ
Հասցեն՝ 375015, Երևան 15, Կարմիր բանակի փողոց № 15, Հեռախոսներ՝ 56-32-72, 58-08-33, 56-14-96, 56-43-38։

«Пионер». На армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван 15, ул. Кармир банаки, № 15.



ԱԼԵՔՍԱՆԴՐ ԳՐԻԳՈՐՅԱՆ (ԾՆՎ. 1927 Թ.) «ՀԱՅԱՍՏԱՆԻ ԼԵՌՆԵՐՈՒՄ» 1982 Թ.
(ՏՐԵՏՅԱԿՈՎՅԱՆ ՊԱՏԿԵՐԱՍՐԱՀ)

*Հանձնված է տպագրության 23.08.1985 թ.: Ստորագրված է տպագրության 15.10.1985 թ.: ՎՖ 06846: Թուղթ օֆսեթ, $70 \times 100^{1}/_{16}$: Տառատեսակը՝ Նորք: Օֆսեթ տպագրություն, 2,92 պայմ. մամ., 3,9 հրատ. մամ.: Տպաքանակ՝ 68032: Պատ. 1823: Գինը՝ 15 կ.:*

*Տպագրված է ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարանում, Օրջոնիկիձեի պողոտա 2:*

Сдано в набор 23.08.1985 г. Подписано к печати 15.10.1985 г. Формат $70 \times 100^{1}/_{16}$. ВФ 06846. Бумага офсетная. Гарнитура «норк». Офсетная печать. 2,92 усл. печ. листа, 3,0 уч.-изд. листа. Тираж 68032. Заказ 1823. Цена 15 коп.

Напечатано в типографии изд-ва ЦК КП Армении, пр. Орджоникидзе, 2.



Գլխավոր խմբագիր՝ **ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ**

Խմբագրական կոլեգիա՝ ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ., ԵՍԱՑԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՄԻԼԻՏՈՆՅԱՆ Է., ՍԻՐԱՎՅԱՆ Հ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ.։

Պատասխանատու քարտուղար՝ ՏՈՆՈՅԱՆ Թ., գեղարվեստական խմբագիր՝ ՔԵՉՕՂԼՅԱՆ Մ., տեխնիկական խմբագիր՝ ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ծ., սրբագրիչ՝ ԱՅՎԱԶՅԱՆ Վ.։